Н. МАРРЪ.

# ДРЕВНЕАРМЯНСКАЯ ХРЕСТОМАТІЯ

съ

## АРМЯНСКО-РУССКИМЪ СЛОВАРЕМЪ

для

## НАЧИНАЮЩИХЪ.



Ն. ՄԱՌ

# ԳԻՏԱՆԻ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔ ՆԱԽՆԻ ՀԱՅԵՐԷՆ

ԸՆԴ ՈՐՈՒՄ

## ԲԱՌԱՐԱՆ ՀԱՅ-ՌՈՒՍԵՐԷՆ

Ի ՊԷՏՍ

ՆՈՐԱՎԱՐԺԻՑ



С.-Петербургъ,
1893.



Ս. ՊԵՏԵՐԲՈՒՐԳ
ՌՅԽԲ

Типографія Я. И. Либермана. ⟅⟆ Տպարան Յ. Ի. ԼԻԲԵՐՄԱՆԻ






Напечатано по опредѣленію Факультета Восточныхъ языковъ отъ 5-го Октября 1892 г.

Исправляющій должность Декана *И. Березинъ.*

И. д. Секретаря *К. Голстунскій.*



Типографія Я. И. Либермана, Вознесенскій пр., 38—4.

# СОДЕРЖАНIЕ.

# Предисловіе.

При составленіи предлежащей Хрестоматіи со Словаремъ я имѣлъ въ виду своихъ слушателей, студентовъ Восточнаго Факультета по разрядамъ Армянско-Грузинско-Персидскому и Санскритско-Персидско-Армянскому. Для первоначальныхъ занятій по армянскому языку до сихъ поръ у насъ была въ употребленіи Хрестоматія или проф. Карріэра, съ армянско-французскимъ глоссаріемъ (Grammaire Arménienne par M. Lauer, traduite, revue et augmentée d'une chrestomathie et d'un glossaire par A. Carrière, Paris 1883) или, главнымъ образомъ, Петермана, съ армянско-латинскимъ словаремъ (I. H. Petermann, Brevis linguae armeniacae grammatica, litteratura, chrestomathia cum glossario, Lipsiae 1872). Небольшой объемъ подобныхъ пособій, какъ нельзя лучше, соотвѣтствуетъ ихъ назначенію и особенно удобенъ для занятій у насъ на Факультетѣ, гдѣ при довольно пространной программѣ армянской словесности нельзя удѣлять много времени подготовительному чтенію текстовъ съ цѣлью ознакомленія съ элементами армянскаго языка и главнѣйшими особенностями строя айканской рѣчи; при томъ и нѣтъ основанія медлить переходомъ отъ отрывковъ къ чтенію непосредственно отдѣльныхъ авторовъ, когда въ изданіяхъ армянскихъ классиковъ не ощущается недостатка. Въ истекшее осеннее полугодіе я уже имѣлъ случай убѣдиться, что въ одинъ семестръ студентъ можетъ освоиться съ началами армянской грамматики и прочесть всю нашу, хотя и бо̀льшую сравнительно съ названными иностранными учебниками, Хрестоматію.

О выборѣ и расположеніи статей говорить нечего, развѣ обмолвиться, что уже въ этой начальной хрестоматіи занимающійся будетъ имѣть случай испробовать свои силы надъ текстами значительной трудности, и что отрывки изъ историковъ слѣдуютъ другъ за другомъ по времени сообщаемыхъ въ нихъ событій. Источники, откуда заимствованы тѣ или другія статьи, указаны въ Словарѣ при именахъ лицъ, которымъ принадлежатъ или приписываются произведенія. Коегдѣ въ текстахъ сдѣланы незначительныя измѣненія. Кстати, въ статьѣ «О Хріи» М. Хоренскаго отъ слова զ. կենցաղաւգտակարագոյն (стр. 48, строчка 4) надо отнять букву զ, въ началѣ, перешедшую къ нему, по недосмотру переписчиковъ или издателей (Венец., 1865 г.), отъ предшествующаго слова հանապազ.

Правописанія я держался древняго, даже եւ=ю предпочитая писанію իւ; աւ=о лишь въ нѣсколькихъ мѣстахъ транскрибировано позднѣйшимъ օ. Въ образчикахъ языка болѣе поздняго времени (XII в.) сохранены кое-какія черты вульгарной орѳографіи.

При печатаніи нѣкоторыя буквы, по преимуществу մ и զ, ломались, такъ въ иныхъ экземплярахъ изъ մարգարէ (стр. 7, строчка 1) получилось несуществующее слово սարգարէ, или не выходили ясно характерныя черточки буквъ գ и զ, отличающія ихъ отъ դ и ղ, но подобныя неясности легко признать; часть ихъ была возможность подправить рукою, такъ какъ Хрестоматія издана всего въ ста съ небольшимъ экземплярахъ. Въ двухъ трехъ случаяхъ буквы повыскакали передъ печатаніемъ и были вставлены наборщикомъ не на мѣсто, а нѣсколько опечатокъ, къ сожалѣнію, ускользнуло и отъ моего вниманія; всѣ эти типографскія погрѣшности прошу исправить по прилагаемому (см. стр. IV) списку опечатокъ до начала чтеній.

Словарь составленъ по новому образцу; въ приготовленной мною къ изданію Начальной Грамматикѣ Древнеармянскаго языка уяснено все то, что можетъ казаться непонятнымъ въ этомъ отношеніи. Пока до-

статочно сказать, что при именахъ шрифтомъ циceро я указываю лишь исходы основъ, а не падежи, ослабленія же гласнаго элемента въ конечномъ слогѣ основъ приводится рядомъ въ скобкахъ. Исключительныя ослабленія назализованныхъ основъ—ան въ прямыхъ падежахъ мн. числа (въ ուն) указываются приписываніемъ ու или ուն, въ скобкахъ, рядомъ съ ան. Въ глаголахъ вспомогательную часть отъ темы всегда отдѣляетъ тирэ (—); прямая скобка (]) отдѣляетъ древнія причастныя окончанія, служащія для образованія темы настоящаго времени, прош. несов. и сослаг. наклон. и пр. отъ основы аориста, назначеніе которой извѣстно изъ Грамматики. Окончаніе аориста я указываю шрифтомъ цицеро лишь при тѣхъ глаголахъ, которые имѣютъ общій аористъ или представляютъ какое либо уклоненіе въ образованіи этого времени. Знаками ʹ и ˘ какъ въ именахъ, такъ въ глаголахъ указывается на присутствіе въ слогѣ подвижнаго гласнаго и на то, находится ли онъ подъ удареніемъ (ʹ) или нѣтъ (˘); изъ Грамматики извѣстны измѣненія, усиленіе или ослабленіе, подвижныхъ гласныхъ въ зависимости отъ перемѣщенія удареній, равно какъ условія и случаи ихъ перемѣщенія.

Въ Словарь включенъ десятокъ другой словъ изъ наиболѣе употребительныхъ, хотя и неимѣющихся въ Хрестоматіи; большею частью, это—слова тождественныя по формѣ съ встрѣчающимися въ текстѣ, но отличающіяся отъ нихъ значеніемъ. Сокращенія названій статей, при ссылкахъ въ Словарѣ, будутъ вполнѣ понятны для справляющихся во время перевода отрывковъ; отмѣтимъ впрочемъ, что *Геогр* = VII статья Хрестоматіи, *Объ еп. Іоан.* = XI a статья, *Объ еп. Іоан.* II = XI b статья, *Л. Парп.*, *Ист.* = XIII статья и *Хр.* = XX статья.

**Н. М.**

26 января 1893 г. С.-Петербургъ.

---

# Опечатки въ Хрестоматіи:

---

| стр. | строка | | напечатано | слѣдуетъ. |
|---|---|---|---|---|
| 10 | 7 | сверху | դայց | բայց |
| 19 | 1 | снизу | զուարճայցէ | զուարճանայցէ |
| 25 | 2 | „ | խորգահանդեձ | խորգահանդերձ |
| 24 | 2 | сверху | երկեղն | երկեղէն |
| 30 | 9 | „ | հայսց | հայոց |
| 31 | 7 | „ | երկոքան | երկոքեան |
| 45 | 7 | „ | բտրձրութեամբն | բարձ՛րութեամբն |
| » | 1 | снизу | աառե- | տառե- |
| 49 | 1—2 | сверху | զիւրաքաչիւրն | զիւրաքանչիւրն |
| 53 | 8—9 | „ | գիտութեմբ | գիտութեամբ |

# Ա. ԾՆՈՒՆԴ։

## ԳԼՈՒԽ Ա.

Ի սկզբանէ արար աստուած զերկին և զեր- 1
կիր։ * Եւ երկիր էր աներևոյթ և անպատրաստ. և 2
խաւար 'ի վերայ անդնդոց. և հոգի աստուծոյ շըր-
ջէր 'ի վերայ ջուրց։ * Եւ ասաց աստուած. եղիցի՛ 3
լոյս. և եղև՝ լոյս։ * Եւ ետես աստուած զլոյսն. զի 4
բարի՛ է. և մեկնեաց աստուած 'ի մէջ լուսոյն և
'ի մէջ խաւարին։ * Եւ կոչեաց աստուած զլոյսն տիւ 5
և զխաւարն կոչեաց գիշե՛ր. և եղև երեկոյ, և եղև
վաղորդայն՝ աւր մի։ * Եւ ասաց աստուած. եղիցի՛ 6
հաստատութիւն 'ի մէջ ջրոցդ, և եղիցի մեկնե՛լ
'ի մէջ ջուրցդ և ջուրց. և եղև այնպէս։ * Եւ ա- 7
րար աստուած զհաստատութիւնն. և անջրպետեաց
աստուած 'ի մէջ ջրոյն, որ 'ի ներքոյ հաստատու-
թեանն, և 'ի մէջ ջրոյն, որ 'ի վերայ հաստատու-
թեանն։ * Եւ կոչեաց աստուած զհաստատութիւնն 8
երկին. և ետես աստուած. զի բարի է. և եղև երե-
կոյ, և եղև վաղորդայն՝ աւր երկրորդ։ * Եւ ասաց 9
աստուած. ժողովեսցի՛ն ջուրքդ, որ 'ի ներքոյ եր-
կնից, 'ի ժողով մի, և երևեսցի ցամաքն. և եղև այն-
պէս. և ժողովեցան ջուրքն, որ 'ի ներքոյ երկնից,

՚ի ժողովս իւրեանց. և երևեցաւ ցամաքն: * Եւ 10
կոչեաց աստուած զցամաքն երկիր. և զժողովս
ջուրցն կոչեաց ծովս. և ետես աստուած. զի բարի
է: * Եւ ասաց աստուած. բղխեսցէ՛ երկիր բանջար 11
խոտոյ՝ սերմանել սերմն ըստ ազգի և ըստ նմանու-
թեան և ծառ պտղաբեր՝ առնել պտուղ ըստ ազգի
իւրում. որոյ սերմն իւր ՚ի նմին ըստ ազգի ՚ի
նմանութիւն ՚ի վերայ երկրի. և եղև այնպէս: * Եւ 12
եհան երկիր բանջար խոտոյ՝ սերմանել սերմն, որ է
՚ի վերայ ամենայն երկրի, և փայտ պտղաբեր՝ առ-
նել պտուղ, որոյ սերմն իւր ՚ի նմին ըստ ազգի ՚ի
վերայ երկրի. և ետես աստուած. զի բարի է: * Եւ 13
եղև երեկոյ, և եղև վաղորդայն՝ աւր երրորդ: * Եւ 14
ասաց աստուած՝ եղիցի՛ն լուսաւորք ՚ի հաստատու-
թեան երկնից՝ ՚ի լուսաւորութիւն ՚ի վերայ երկրի.
և մեկնե՛լ ՚ի մէջ տուընջեան և ՚ի մէջ գիշերոյ. և
եղիցին ՚ի նշանս, և ՚ի ժամանակս և յաւուրս և
՚ի տարիս: * Եւ եղիցին ՚ի լուսաւորութիւն ՚ի հա- 15
ստատութեան երկնից ծագել յերկիր. և եղև ա՛յն-
պէս: * Եւ արար աստուած զերկուս լուսաւորսն 16
զմեծամեծս՝ զլուսաւորն մեծ յիշխանութիւն տու-
ընջեան և զլուսաւորն փոքր յիշխանութիւն գի-
շերոյ. և զաստեղս: * Եւ ե՛դ զնոսա աստուած ՚ի 17
հաստատութեան երկնից լուսատու՛ լինել յերկիր:
* Եւ իշխել տուընջեան և գիշերոյ և մեկնել ՚ի 18
մէջ լուսոյն և ՚ի մէջ խաւարին. և ետես աստու-
ած. զի բարի է: * Եւ եղև երեկոյ, և եղև վաղոր- 19
դայն՝ աւր չորրորդ: * Եւ ասա՛ց աստուած. հանցե՛ն 20

Ջուրք զեռունս շնչոց կենդանեաց, և թռչունս
թևաւորս 'ի վերայ երկրի՝ ըստ հաստատութեան
երկնից· և եղև այնպէս։ * Եւ արար աստուած 21
կէտս մեծամեծս և զամենայն շունչ զեռնոց կեն-
դանեաց, զոր հանին ջուրք ըստ ազգի իւրեանց,
և զամենայն թռչունս թևաւորս ըստ ազգի· և ետես
աստուած· զի բարի՛ են։ * Եւ աւրհնեաց զնոսա աս- 22
տուած և ասէ· աճեցէ՛ք և բազմացարո՛ւք, և լցէ՛ք
զջուրսդ, որ 'ի ծովս· և թռչունքդ բազմասցի՛ն 'ի
վերայ երկրի։ * Եւ եղև երեկոյ, և եղև վաղորդայն՝ 23
աւր հի՛նգերորդ։ * Եւ ասաց աստուած· հանցէ 24
երկիր շունչ կենդանի ըստ ազգի չորքոտանի և
սողունս և գազանս երկրի ըստ ազգի· և եղև այն-
պէս։ * Եւ արար աստուած զգազանս երկրի ըստ 25
ազգի և զանասունս ըստ ազգի և զամենայն սո-
ղունս երկրի ըստ ազգի իւրեանց· և ետես աստու-
ած· զի բարի՛ են։ * Եւ ասաց աստուած· արասցո՛ւք 26
մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան,
և իշխեսցեն ձկանց ծովու և թռչնոց երկնից և
անասնոց և ամենայն երկրի և ամենայն սողնոց,
որ սողին 'ի վերայ երկրի։

* Եւ արար աստուած զմարդն 'ի պատկեր իւր· 27
ըստ պատկերի աստուծոյ արար զնա· արու և էգ
արար զնոսա։ * Եւ աւրհնեաց զնոսա աստուած՝ 28
և ասէ· աճեցէ՛ք և բազմացարո՛ւք՝ և լցէ՛ք զերկիր·
և տիրեցէ՛ք դմա· և իշխեցէ՛ք ձկանց ծովու և
թռչնոց երկնից և ամենայն անասնոց և ամենայն
երկրի և ամենայն սողնոց, որ սողին 'ի վերայ եր-

կրի։ * Եւ ասաց Աստուած. ահաւադիկ ետու ձեզ 29
զամենայն խոտ սերմանելի՝ սերմանել սերմն ըստ
ազգի եւ ըստ նմանութեան, որ է 'ի վերայ ամե-
նայն երկրի, եւ ամենայն փայտ, որ ունիցի յինքեան
պտուղ սերման սերմանելոյ՝ ձե՛զ լիցի 'ի կերա-
կուր։ * Եւ ամենայն գազանաց երկրի եւ ամենայն 30
թռչնոց երկնից եւ ամենայն սողնոց, որ սողեն 'ի
վերայ երկրի՝ որ ունիցի շունչ կենդանի, եւ ամե-
նայն խոտ դալար 'ի կերակուր. եւ եղեւ այնպէս։
* Եւ ետես Աստուած զամենայն, զոր արար, եւ ահա 31
բարի՛ են յոյժ. եւ եղեւ երեկոյ, եւ եղեւ վաղորդայն՝
աւր վեցերորդ։

---

## Բ. ԵԼՔ։

### ԳԼՈՒԽ Ի.

Խաւսեցաւ տէր զամենայն զպատգամս զայ- 1
սոսիկ՝ եւ ասէ։
* Ե՛ս եմ տէր Աստուած քո, որ հանի զքեզ 2
յերկրէն եգիպտացւոց 'ի տանէ ծառայութեան. * մի՛ 3
եղիցին քեզ այլ աստուածք բա՛ց յինէն։ * Մի՛ ա- 4
րասցես դու քեզ կուռս ըստ ամենայն նմանու-
թեան, որ ինչ յերկինս 'ի վեր, եւ որ ինչ յերկիր 'ի
խոնարհ, եւ որ ինչ 'ի ջուրս 'ի ներքոյ երկրի. * մի՛ 5
երկիրպագանիցես նոցա, եւ մի՛ պաշտեսցես զնո-
սա. զի ե՛ս եմ տէր Աստուած քո՝ Աստուած
նախանձոտ, որ հատուցանեմ զմեղս հարանց՝ որ-

դւոց, յերիս և 'ի չորս ազգս ատելեաց իմոց. * և 6
առնեմ ողորմութիւն 'ի հազար ազգս սիրելեաց
իմոց, և որք պահեն զհրամանս իմ։ * Մի առնու- 7
ցուս զանուն տեառն աստուծոյ քոյ 'ի վերայ սնո-
տեաց. զի ոչ սրբեսցէ տէր զայն, որ առնուցու զա-
նուն նորա 'ի վերայ սնոտեաց։ * Յիշեսջի՛ր զաւրն 8
շաբաթուց սրբե՛լ զնա. * զվեց աւր գործեսցես և 9
արասցես զամենայն գործս քո. * յաւուրն եւթնե- 10
բորդի շաբա՛թ տեառն աստուծոյ քում, մի՛ գործես-
ցես 'ի նմա զամենայն գործ քո դո՛ւ և ուստր քո և
դուստր քո, ծա՛ռայ քո և աղախին քո, ե՛զն քո և
էշ քո և ամենայն անասուն քո և եկն քո և պան-
դուխտն քո, որ 'ի քեզ։ * Զի զվե՛ց աւր արար տէր 11
աստուած զերկինս և զերկիր և զծով և զամենայն,
որ 'ի նոսա, և հանգեաւ յաւուրն եւթներորդի.
վասն այնորիկ աւրհնեաց տէր զաւրն եւթներորդ
և սրբեաց զնա։ * Պատուեա՛ զհայր քո և զմայր 12
քո. զի քեզ բարի՛ լինիցի և զի երկայնակեա՛ց լի-
նիցիս 'ի վերայ երկրին բարութեան, զոր տէր աս-
տուած տացէ քեզ։ * Մի՛ սպանաներ։ * Մի՛ շնար։ 13
* Մի՛ գողանար։ * Մի՛ սուտ վկայութիւն վկայեր 14
զընկերէ քումմէ։ * Մի՛ ցանկանար տան ընկերի քոյ 15
և մի՛ անդոյ նորա. մի՛ ցանկանար կնոջ ընկերի 16
քոյ և մի՛ ծառայի նորա և մի՛ աղախնոյ նո- 17
րա և մի՛ եզին նորա և մի՛ իշոյ նորա և մի՛
ամենայն անասնոյ նորա և մի՛ ամենայնի, զինչ ըն-
կերի քոյ իցէ։



# Գ. ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ:

—

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Իբրեւ մօտ եղեն յԵրուսաղէմ եւ եկին 'ի 1
Բեթփագէ մերձ 'ի լեառն Ձիթենեաց. յայնժամ Յի-
սուս արձակեաց երկուս յաշակերտացն իւրոց. * Եւ ա- 2
սէ ցնոսա. երթա՛յք 'ի գեղդ՝ որ առաջի ձեր է, եւ ան-
դէն գտանիցէք է՛շ կապեալ, եւ յաւանա՛կ ընդ նմին,
լուծէ՛ք՝ ածէ՛ք ինձ: * Եւ եթէ ոք ասիցէ ինչ ձեզ, 3
ասասջի՛ք, եթէ տեառն իւրեանց պիտոյ են. եւ վաղ-
վաղակի՛ առաքէ զնոսա: * Բայց այս ամենայն 4
եղեւ, զի լցցի՛ բան մարգարէին՝ որ ասէ. * ասա- 5
ցէք դստեր Սիովնի. ահա՝ թագաւո՛ր քո գա՛յ քեզ
հեզ՝ եւ հեծեա՛լ յէշ եւ 'ի յաւանակի իշոյ. * Գնա- 6
ցին աշակերտքն եւ արարին, որպէս հրամայեացն
նոցա Յիսուս. * Եւ ածին զէշն եւ զյաւանակն. եւ 7
արկին զնոքաւք ձորձս, եւ նստա՛ւ 'ի վերայ նո-
ցա: * Եւ բազում ժողովուրդք տարածեցին զհան- 8
դերձս իւրեանց 'ի ճանապարհին եւ այլք հատա-
նէին ոստս 'ի ծառոց՝ եւ տարածանէի՛ն 'ի ճանա-
պարհին: * Եւ ժողովուրդն՝ որ առաջին եւ զկնի 9
երթային՝ աղաղակէին եւ ասէ՛ին. աւրհնութիւն
որդւոյ Դաւթի, աւրհնեա՛լ, որ գայ յանուն տեառն.
աւրհնութիւն 'ի բարձունս: * Եւ 'ի մտանելն նորա 10
յԵրուսաղէմ՝ դղրդեցա՛ւ քաղաքն ամենայն, եւ ասէ՝

ո՞վ իցէ սա։ * Եւ ժողովուրդքն ասէին. սա՛ է մար- 11
գարէն Յիսուս՝ որ 'ի Նազարեթէ՛ Գալիլեացւոց։
* Եւ եմուտ Յիսուս 'ի տաճարն և եհան ար- 12
տաքս զամենեսին, որ վաճառէինն և գնէին 'ի տա-
ճարի անդ. և զսեղանս հատավաճառացն կործա-
նեաց՝ և զաթոռս աղաւնեվաճառացն։ * Եւ ասէ 13
ցնոսա. գրեա՛լ է՝ տուն իմ տո՛ւն աղօթից կո-
չեսցի. և դուք արարէք զդա՝ այրս աւազակաց։
* Եւ մատեան առ նա կոյրք և կա՛ղք 'ի տա- 14
ճարին, և բժշկեա՛ց զնոսա։ * Իբրև տեսին քահա- 15
նայապետքն և դպիրք՝ զսքանչելիսն, զոր արար, և
զմանկտին, որ աղաղակէին 'ի տաճարին և ասէին՝
աւրհնութիւն որդւոյ Դաւթի, բարկացա՛ն. * Եւ 16
ասեն ցնա. լսե՞ս, զինչ ասեն դոքա. ասէ ցնոսա Յի-
սուս՝ այո՛. չիցէ՛ ընթերցեալ ձեր՝ եթէ 'ի բերա-
նոյ տղայոց և ստնդիեցաց կատարեցե՛ր զաւրհ-
նութիւն։ * Եւ թողեալ զնոսա, ե՛լ արտաքոյ քա- 17
ղաքին 'ի Բեթանիա, և անդ ագաւ։
* Եւ այգուցն իբրև դարձաւ անդրէն 'ի քա- 18
ղաքն՝ քաղցեա՛ւ. * Եւ տեսեալ թզենի մի 'ի վերայ 19
ճանապարհին, ե՛կն 'ի նա, և ո՛չինչ եգիտ 'ի նմա՝
բայց միայն տերև՛. և ասէ ցնա. մի՛ այսուհետև
'ի քէն պտուղ եղիցի յաւիտեան. և առ ժամայն
չորացաւ թզենին։ * Իբրև տեսին աշակերտքն՝ զար- 20
մացա՛ն և ասեն, թէ զիա՞րդ վաղվաղակի ցամա-
քեցաւ թզենին։ * Պատասխանի՛ ետ Յիսուս և ասէ 21
ցնոսա. ամէն ասե՛մ ձեզ, եթէ ունիցիք հաւատս՝ և
ո՛չ երկմտիցէք՝ ոչ միայն զթզենւոյդ առնիցէք, այլ

թէպէտ և լերինդ ասիցէք՝ բարձի՛ր և անկի՛ր 'ի
ծով, եղիցի՛. * և զամենայն ինչ, զոր և խնդրիցէք 22
յաղաւթս հաւատով՝ առնուցո՛ւք։

* Եւ իբրև եկն 'ի տաճարն, մատեան առ նա՝ 23
մինչդեռ ուսուցանէր, քահանայապետքն և ծերք
ժողովրդեանն՝ և ասեն. որո՞վ իշխանութեամբ առ-
նես զայդ. և ո՞վ ետ քեզ զիշխանութիւնդ զայդ։
* Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. հարցից 24
և ե՛ս զձեզ բան մի. զոր թէ ասիցէք ինձ, և ես
ձե՛զ ասացից՝ որով իշխանութեամբ առնեմ զայս։
* Մկրտութիւն Յովհաննու ուստի՞ էր՝ յերկնի՞ց 25
թէ 'ի մարդկանէ։ Եւ նոքա խորհէին ընդ մի-
մեանս և ասէին. * եթէ ասեմք յերկնից, ասէ ցմեզ. 26
իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէ՛ք նմա. և եթէ ասեմք
'ի մարդկանէ, երկնչի՛մք 'ի ժողովրդենէն. զի ամե-
նեքին զՅովհաննէս իբրև զմարգարէ՛ ունին։ * Պա- 27
տասխանի ետուն Յիսուսի և ասեն. ո՛չ գիտեմք։
Ասէ ցնոսա և նա. և ո՛չ ես ասեմ ձեզ՝ որով իշխա-
նութեամբ առնեմ զայս։

* Բայց զիա՞րդ թուի ձեզ. ա՛ռն միոջ էին եր- 28
կո՛ւ որդիք, և մատուցեալ առ առաջինն՝ ասէ. ո՛ր-
դեակ՝ ե՛րթ այսաւր գործեա՛ յայգւոջ։ * Նա՝ պա- 29
տասխանի՛ ետ՝ և ասէ. երթա՛մ տէր՝ և ո՛չ չոգաւ։
* Մատեաւ և առ միւսն և ասէ՛ նոյնպէս. նա՝ 30
պատասխանի ետ՝ և ասէ. ո՛չ կամիմ. բայց յետոյ
զղջացաւ՝ և չոգա՛ւ յայգին։ * Արդ՝ ո՞յերկոցունց 31
արա՛ր զկամս հաւրն. ասեն՝ յետինն։ Ասէ ցնոսա Յի-
սուս. ամէն ասե՛մ ձեզ, զի մաքսաւորք և պոռ-

նիկք՝ յառաջեսցեն քան զձեզ յարքայութիւն երկ-
նից։ * Զի եկն Յովհաննէս ճանապարհաւ արդարու- 32
թեան՝ և ոչ հաւատացէք նմա. և մաքսաւորք և
պոռնիկք հաւատացին նմա, և դուք տեսէք՝ և ոչ
զղջացարուք յետոյ հաւատալ նմա։
* Այլ առակ լուարո՛ւք. Այր մի էր տանուտէր, 33
որ տնկեաց այգի և ցանգով պատեաց զնա, և փո-
րեաց ՚ի նմա հնձան և շինեաց աշտարակ. և ետ
զնա ցմշակս և գնաց ՚ի տար աշխարհ։ * Իբրև 34
մերձեցաւ ժամանակ պտղոյ, առաքեաց զծառայս
իւր առ մշակսն՝ առնուլ զպտուղս նորա։ * Եւ 35
կալեալ մշակացն զծառայս նորա, զոմն տանջեցին,
զոմն սպանին, զոմն քարկոծեցին։ * Դարձեալ առա- 36
քեաց այլ ծառայս բազումս քան զառաջինսն, և
արարին նոցա նոյնպէս։ * Յետոյ առաքեաց առ 37
նոսա զորդի իւր, և ասէ. Թերևս ամաչեսցեն յոր-
դւոյ աստի իմմէ։ * Իսկ մշակքն իբրև տեսին զոր- 38
դին, ասեն ընդ միտս. սա՛ է ժառանգն, եկա՛յք
սպանցուք զսա և կալցուք զժառանգութիւն սո-
րա։ * Եւ առեալ հանին զնա արտաքոյ քան զայգին՝ 39
և սպանին։ * Արդ՝ յորժամ եկեսցէ տէր այգւոյն, 40
զի՞նչ արասցէ մշակացն այնոցիկ։ * Ասեն ցնա. 41
զչարսն չարաւ կորուսցէ. և զայգին տացէ այլոց
մշակաց, որք տայցեն նմա զպտուղս ՚ի ժամու իւ-
րեանց։ * Ասէ ցնոսա Յիսուս. չիցէ՞ երբէք ընթեր- 42
ցեալ ձեր ՚ի գիրս. զվէմն զոր անարգեցին շինաւղքն,
նա եղև գլուխ անկեան. ՚ի տեառնէ եղև այս, և է
սքանչելի յաչս մեր։ * Վասն այսորիկ ասեմ ձեզ, զի 43

*բարձցի 'ի ձէնջ արքայութիւն աստուծոյ և տացի*
*ազգի, որ առնիցէ զպտուղս նորա։ * Եւ որ անկցի* 44
*'ի վերայ վիմիս այսորիկ՝ փշրեսցի, և յոյր վերայ*
*անկցի՝ հոսեսցէ զնա։ * Իբրև լուան քահանայա-* 45
*պետքն և դպիրքն՝ և փարիսեցիք զառակս նորա,*
*գիտացին, թէ վասն նոցա ասաց։ * Եւ խնդրէին զնա* 46
*ունել, գայց երկեան 'ի ժողովրդոցն. քանզի իբրև*
*զմարգարէ ունէին զնա։*

---

## Դ. ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ։

### ԳԼՈՒԽ ԻԳ.

*Յայնժամ խաւսեցա՛ւ Յիսուս ընդ ժողովուրդսն* 1
*և ընդ աշակերտսն իւր՝ և ասէ. * յաթոռն Մովսէ-* 2
*սի նստան դպիրքն և փարիսեցիք. * զամենայն ինչ՝* 3
*որ ասիցեն ձեզ՝ արարէ՛ք և պահեցէք. բայց ըստ*
*գործոցն նոցա մի՛ առնէք, զի ասեն՝ և ո՛չ առնեն։*
** Կապեն բեռինս ծանո՛ւնս և դժուարակիրս, և* 4
*դնեն 'ի վերայ ուսոց մարդկան. և մատամբ իւրեանց*
*ո՛չ կամին շարժել զնոսա։ * Եւ զամենայն գործս* 5
*իւրեանց առնեն 'ի ցո՛յցս մարդկան. լայնեն զգրա-*
*պանակս իւրեանց և երկայնե՛ն զքղանցս հանդեր-*
*ձից իւրեանց. * սիրեն զյառաջագա՛հս յընթրիս և* 6

զնախաթոռս 'ի ժողովուրդս և զողջոյնս 'ի հրապա-
րակս * և կոչել 'ի մարդկանէ՝ ռաբբի ռաբբի: * Բայց 7 8
դուք՝ մի՛ զոք կոչէք վարդապետ, զի մի՛ է ձեր
ուսուցիչ, և ամենեքին դուք՝ եղբա՛րք էք: * Եւ 9
Հայր՝ մի՛ կոչէք ձեզ յերկրի. զի ձեր մի՛ է Հայր՝
որ յերկինսն է: * Եւ մի՛ կոչեցիք ուսուցիչք. զի 10
ուսուցիչ ձեր՝ Քրիստոս է: * Եւ մեծն 'ի ձէնջ 11
եղիցի ձեր սպասաւոր: * Որ բարձրացուցանէ զան- 12
ձըն՝ խոնարհեսցի՛ և որ խոնարհեցուցանէ զանձն՝
բարձրասցի՛:

* Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւո- 13
րաց. զի փակէք զարքայութիւն երկնից առաջի
մարդկան. դուք ո՛չ մտանէք, և որոց մտանենն՝ չտա՛յք
թոյլ մտանել: * Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց 14
կեղծաւորաց. զի ուտէք զտունս այրեաց պատճառա-
նօք երկարէք զաղօթս, վասն զի աւելի դատաս-
տան ընդունիցիք: * Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց 15
կեղծաւորաց. զի յածիք ընդ ծով և ընդ ցամաք՝
առնել եկամուտ մի. և յորժամ լինիցի, առնէք զնա
որդի գեհենի՝ կրկին ևս քան զձեզ: * Վա՜յ ձեզ՝ ա- 16
ռաջնորդք կոյրք. զի ասէք՝ որ երդնու 'ի տա-
ճարն՝ չէ՛ ինչ, բայց որ երդնու յոսկին, որ 'ի տա-
ճարին է՝ արժան է: * Մորոսք և կոյրք՝ զի՞նչ մեծ 17
է, ոսկի՞ն՝ եթէ տաճարն, որ սրբէ՛ զոսկին: * Եւ 18
որ երդնու 'ի սեղանն՝ չէ՛ ինչ, բայց որ երդնու 'ի
պատարագն, որ 'ի վերայ նորա է՝ արժան է: * Յի- 19
մա՛րք և կոյրք՝ զի՞նչ մեծ է. պատարա՞գն եթէ
սեղանն՝ որ սրբէ զպատարագն: * Իսկ արդ՝ որ 20

երդուաւ 'ի սեղանն, երդուաւ 'ի նա և յամենայն,
որ 'ի վերայ նորա է. * Եւ որ երդուաւ 'ի տաճարն, 21
երդուաւ 'ի նա՝ և 'ի բնակիչն նորա. * Եւ որ եր- 22
դուաւ յերկինս, երդնու յաթոռն աստուծոյ՝ և յայն,
որ նստին 'ի վերայ նորա: * Վա՜յ ձեզ դպրաց և 23
փարիսեցւոց կեղծաւորաց. զի տասանորդէ՛ք զանա-
նուխ և զսամիթ և զչաման, և թողէք զծանր
ծանր օրինացն՝ զդատաստան և զողորմութիւն և
զհաւատս. զայս արժա՜ն էր առնել՝ և զայն՝ չթո-
ղո՜ւլ: * Առաջնորդք կոյրք, որ զմժղուկս քամէք 24
և զուղտս կլանէք: * Վա՜յ ձեզ դպրաց և փարի- 25
սեցւոց կեղծաւորաց, զի սրբէ՛ք զարտաքին զբա-
ժակին և զսկաւառակին, և 'ի ներքոյ լի են յափ-
շտակութեամբ և անխառնութեամբ: * Փարիսեցի՛ 26
կոյր՝ սրբեա՛ նախ զներքին բաժակին և զսկաւա-
ռակին, զի լինիցի և արտաքինն նոցա սուրբ: * Վա՜յ 27
ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի նման
էք գերեզմանաց բռելոց. որ արտաքոյ երևին գե-
ղեցիկ՝ և 'ի ներքոյ լի են ոսկերաւք մեռելոց և ա-
մենայն պղծութեամբ: * Նոյնպէս և դուք արտա- 28
քոյ երևիք մարդկան արդարք, և 'ի ներքոյ լի էք
կեղծաւորութեամբ և անաւրէնութեամբ: * Վա՜յ ձեզ 29
դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց, զի շինէք զշի-
րիմս մարգարէից՝ և զարդարէք զգերեզմանս ար-
դարոց: * Եւ ասէք. եթէ էաք յաւուրս հարցն 30
մերոց, ո՛չ հաղորդէաք արեան մարգարէիցն: * Ապա 31
ուրեմն վկայէք զանձանց՝ եթէ որդիք էք այնոցիկ՝
որ կոտորէին զմարգարէսն: * Եւ դուք լցէ՛ք զչափ 32

հարցն ձերոց։ * Օ՛ձք՝ ծնունդք իժից, զիա՞րդ փախ- 33
նուցուք 'ի դատաստանէ գեհենին։ * Վասն այդորիկ 34
ահաւասիկ ես առաքեմ առ ձեզ մարգարէս և
իմաստունս և դպիրս, և 'ի նոցանէ սպանանիցէք
և 'ի խաչ հանիցէք, և 'ի նոցանէ տանջիցէք 'ի
ժողովուրդս ձեր, և հալածիցէք 'ի քաղաքէ 'ի քա-
ղաք։ * Որպէս զի եկեսցէ 'ի վերայ ձեր ամենայն 35
արիւն արդար հեղեալ յերկրի. յարենէն Աբելի ար-
դարոյ մինչև ցարիւնն Զաքարիայ որդւոյ Բարա-
քեայ՝ զոր սպանէք ընդ մէջ տաճարին և սեղանոյ։
* Ամէն ասեմ ձեզ. եկեսցէ այն ամենայն 'ի վերայ 36
ազգիս այսորիկ։ * Երուսաղէմ, Երուսաղէմ, որ կո- 37
տորէր զմարգարէս՝ և քարկոծ առնէր զառաք-
եալսն առ քեզ. քանի՞ցս անգամ կամեցայ ժողովել
զմանկունս քո՝ զոր աւրինակ ժողովէ հաւ զձագս
իւր ընդ թևովք, և ո՛չ կամեցարուք։ * Ահա թո- 38
ղեալ լիցի ձեզ տունդ ձեր աւերակ։ * Բայց ասեմ 39
ձեզ՝ թէ ո՛չ ևս տեսանիցէք զիս յայսմ հետէ, մին-
չև ասիցէք. աւրհնեալ եկեալ յանուն տեառն։



## Ե. ԲԱՆՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ՍՈՒՐԲ ՀԱՐԱՆՑՆ։

---

### Ա. ՎԱՍՆ ԿԱՏԱՐԵԱԼ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ։

*Եհարց ոմն 'ի հարանցն ընդ իմաստուն բժիշկ մի և ասէ. ամենայն ցաւոց դեղ գիտե՞ս, ով իմաստուն։ Ասէ բժիշկն. յոյժ գիտեմ, թէ լսես ինձ. առ զշաքարն ապաշխարութեան և զծաղիկն եղբայրսիրութեան և զտերևն աղքատսիրութեան և ըզպտուղն խոնարհութեան, և լից 'ի հաւան ողորմութեան և աղա զինքն ծունր ածելով և քամէ 'ի զսստառակն տուայտութեան, և արտասուախառն ըմպէ յամենայն մէջ գիշերի. այս է ամենայն ցաւոց դեղ, որ ոչ միայն զներքին մարդն բժշկէ, այլ և զարտաքինն սրբէ և նորոգէ և մաքրէ.*

### Բ. ՎԱՍՆ ՀԱՆԴԱՐՏՈՒԹԵԱՆ։

*Զոր աւրինակ 'ի ճանապարհի կոխեալ ոչ բուսանի դալարի խոտոյ՝ թէպէտ և սերմանի ես, վասն զի կոխեն զնա ուղևորք, այսպէս պատահեսցի և մեզ 'ի խորհրդոց մերոց։ Իսկ յորժամ հանդարտեալ պարապես և արգելցիս յամենայնէ, յայնժամ բուսեալ ծաղկին ամենայն հոգևոր գործք, քանզի*

'ի քեզ ամենայնն էին. այլ վասն այնորիկ ոչ երևէին, զի 'ի վերայ նոցա գնացին ախտք և կոխեցին զնոսա։

## Գ. ՎԱՍՆ ԶՂՋՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐՏԱՍՈՒԱՑ։

Եթէ իցեն գերեզմանք մերձ ի տեղն, ուր բնակիս դու, արագ արագ երթիցես դու անդ, զի տեսցես զթաղեալսն և խոնարհեսցիս, ևս առաւել 'ի ժամ պատերազմի մարմնոյ քո և եռմանց ախտից։ Եւ ուր և լուիցես, եթէ եղբայր գնայ առ աստուած, վաղվաղակի գնասցես և նստիցիս մերձ առ նա, զի տեսցես, եթէ որպէս ելանէ հոգին 'ի մարմնոյն։

## Դ. ՎԱՍՆ ԺՈՒԺԿԱԼՈՒԹԵԱՆ։

Միայնակեաց մի իջանէր 'ի լեռնէն և ետես հաւատաւոր մի և փոխեաց զուղին։ Եւ նա ասէ. եթէ լեալ էր քո կատարեալ կրաւնաւոր, ոչ էիր մտածեալ, եթէ կին զոք տեսեր։

## Ե. ՎԱՍՆ ՊՈՌՆԿՈՒԹԵԱՆ։

Լեր նման առն անցաւորի, որ թէպէտ գայ նմա հոտ 'ի խոհակերացն՝ նա ոչ ուտելով ոչ լուծանէ զպահքն, որպէս և ոչ 'ի դարշ հոտոյն, որ գայ՝ տղմոտ լինի։ Նոյնպէս և դու՝ թէպէտ դիպի քեզ խորհուրդ, մի հեշտանար և մի յամեր։

## Ջ. ՎԱՍՆ ԱՆԸՆՉՈՒԹԵԱՆ։

*Մարդ, որ ճաշակէ զքաղցրութիւն անստացուածութեան, ծանր համարի և զհանդերձն, զոր զգեցեալն է, և զկուժ ջրոյն, զի միտք նորա յայլ դէմս ժուժկալէ։ Որ զնիւթն ատէ, կարող է ատել և զանձն իւր. եթէ պակասէ քեզ պիտոյք մարմնոյ՝ մի ասասցես մարդոյ տալ զայն, այլ մանաւանդ ընկեա առ աստուած զհոգս քո. ապ՝ եթէ զաստուած թողուս և խնդրես 'ի մարդկանէ, ոչ հաւատաս, եթէ կարող է աստուած աւգնել քեզ։*

---

## Ձ. ՏԵՍԻԼ ՈՒՐՈՒՄՆ Ի ԾԵՐՈՑՆ:

---

*Էր ոմն 'ի ծերոցն, որ նստէր 'ի տան իւրում, և լուաւ ձայն, որ ասէր. եկ արտաքս, և ցուցից քեզ զգործս մարդկան։ Եւ ելեալ նորա, առեալ տարաւ զնա 'ի տեղի ուրեմն և եցոյց նմա մարդ մի, զի կայր յոտն և հանէր ջուր 'ի ջրհորոյն և արկանէր յորդ ծակ, և իջանէր ջուրն դարձեալ 'ի ջրհորն։ Եւ յառաջ մատուցեալ սակաւիկ մի՝ եցոյց նմա եթովպացի զոմն, զի հատանէր փայտ և առնէր բեռն մեծ, և փորձեալ համբառնալ զբեռնն և ոչ հանդուրժեաց շարժել. և երթեալ դարձեալ հա-*

տանէր այլ փայտ և յաւելոյր 'ի բեռնն. բազում անգամ այսպէս արարեալ՝ մեծացոյց զբեռնն։ Եւ երթեալ սակաւիկ մի յառաջ՝ մերձեցան 'ի դուռն քաղաքի միոջ, և ահա երկուք ոմանք գային հեծեալք 'ի ձիս, և ունէին փայտ խոտորնակի և կամէին մտանել 'ի քաղաքն և ոչ կարէին, վասն զի զփայտն խոտորնակի ունէին, և ոչ խոտորեցան սոքա առ իրեարս։ Եւ իբրև զհետ նոցա չոգաւ, ետես, զի մնացին երկոքեան արտաքս 'ի քաղաքէն։ Արդ սոքա են, զոր թէ տեսանես, որք ունին զլուծ ամբարտաւանութեանն և ոչ խոնարհեցան, զի ուղղեսցեն զինքեանս և զհետ երթիցեն խոնարհ ճանապարհին Քրիստոսի, յաղագս այնորիկ արգելան արտաքոյ արքայութեանն աստուծոյ։ Եւ որ զփայտն կոտորէր այրն՝ 'ի մեղս բազումս էր անկեալ, և փոխանակ ապաշխարելոյ՝ այլ ևս գործէր և դնէր մեղս 'ի մեղաց վերայ։ Եւ որ զջուրն հանէր՝ բարի գործս գործէր, սա է մարդն, որ առնէ զողորմածութիւն. իսկ յայլում յամենայնի զանիրաւութիւն գործէր, և վասն չար գործոցն խանգարէ և զսակաւ բարին։ Արդ պարտ է մարդոյ արթուն լինել 'ի գործս իւր, զի մի' ընդունայն վաստակեսցի։



# Է. ՄՈՎՍԵՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅՆ ԱՆՈՒԱՆԵԱԼ ԱՇԽԱՐՀԱՑՈՅՑ:

---

## ՅԱՂԱԳՍ ՄԵԾԱՑ ՀԱՅՈՑ։

Մեծ Հայք յելից կալով Կապադովկիոյ և Փոքր Հայոց առ Եփրատ գետով մերձ 'ի Տաւրոս լեառն, որ բաժանէ զնա 'ի միջագետաց, և 'ի հարաւոյ սահմանի Ասորեստանիւ և դառնայ առ Ատրպատականաւ ընդ Մարս մինչև 'ի մուտս Երասխայ 'ի Կասբից ծով. իսկ ըստ հիւսիսոյ առ երի կայ Աղուանից և Վրաց և Եգերայ մինչև ցնոյն դարձուածն Եփրատայ 'ի հարաւ կոյս։ Եւ ունի Հայք լերինս անուանիս և գետս մեծամեծս և մանունս և ծովակս վեց։

Եւ ունի Մեծ Հայք շուրջ զիւրև փոքր աշխարհս հնգետասան, որք են այսոքիկ. առաջին աշխարհ՝ Բարձր Հայք, որ է կողմ Կարնոյ քաղաքի. երկրորդ աշխարհ՝ Չորրորդ Հայք. երրորդ՝ Աղձնիք առ Տիգրիս գետով. չորրորդ՝ Տարուբերան, որ է Տարաւն. հինգերորդ՝ Մոկք, որ առ Ասորեստանեաւ. վեցերորդ աշխարհ՝ Կորճայք. եւթներորդ աշխարհ Պարսկահայք, որ առ Ատրպատականիւք. ութերորդ աշխարհ՝ Վասպուրական, որ ըստ մտից հիւսիսոյ նորա է. իններորդ աշխարհ Սիւնիք՝ որ առ Երասխաւ. տասներորդ՝ Արցախ, որ յերի նորա կայ.

մետասաներորդ աշխարհ՝ Փայտակարան քաղաքաւ, որ առ եզերբն Կասբից, 'ի մուտս Երասխայ. երկոտասաներորդ աշխարհ՝ Ուտէացւոց, որ առ Աղուանիւք և Կուր գետով. երեքտասաներորդ աշխարհ՝ Գուգարք, որ առ Վրաւք. չորեքտասաներորդ աշխարհ՝ Տայք, որ առ Եգերբ. հնգետասաներորդ աշխարհ՝ Այրարատ, 'ի մէջ նոցա:

---

## Ը. ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ:

### ՅԱՂԱԳՍ ՏԻԳՐԱՆԱՅ, ԹԷ ՈՐՊԻՍԻ ԱՄԵՆԱՅՆԻՒ:

Սա ամենեցունց թագաւորացն մերոց հարստագոյն և խոհեմագոյն, և արանցն այնոցիկ և ամենեցուն քաջ: Որ և Կիւրոսի աջակցեալ, զՄարացն 'ի բաց բառնալով զիշխանութիւն և զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ընդ իւրև նուաճեալ հնազանդէր: Եւ զսահման մերոյ բնակութեանս ընդարձակեալ 'ի հինսն մեր հասուցանէ յեզերս՝ ծայրից բնակութեանց, և ամենեցունց՝ որոց առ իւրովքն էին ժամանակաւք՝ նախանձելի և յետնոցս ըղձալի ինքն և ժամանակ իւր:

Չի ո՞ ոք 'ի ճշմարիտ արանց, և որոց 'ի բարս արութեան և խոհականութեան սիրելութիւն կայցէ, սորա յիշատակաւքն ոչ զուարճայցէ և յորդո-

րիցէ այսպիսի այր լինել։ Արանց կացեալ գլուխ և արութիւն ցուցեալ, զազգս մեր բարձրացոյց· և զընդ լծով կացեալսն՝ լծադիրս և հարկապահանջս կացոյց բազմաց· մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէս պէս գունոց և անգուածոց՝ արանց հասակաց և կանանց միանգամայն բազմացոյց· որով տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք և գեղաւորքն ըստ ժամանակին առ հասարակ դիւցազնացեալք։ Հետևակամարտքն ՚ի վերայ ուսոց ձիոց բերեալք և պարսաւորքն առ հասարակ դիպաղեղունք և շերտաւորքն ՚ի սուսեր և ՚ի տէգ նիզակի վառեալք· մերկքն վահանաւք և զգեստիւք երկաթոյ պարածածկեալք։ Որոց ՚ի մի վայր հասելոց բաւական էր տեսիլն միայն և որ ՚ի նոցայցն պահպանակաց և զինուց փայլմունք և շողիւնք՝ զթշնամիսն արտահալածել։ Խաղաղութեան և շինութեան բերող, եւղով և մեղու զհասակս ամենեցուն պարարեալ։

Զայս և որ այլ այսպիսիք բազումք՝ եբեր մերոյ աշխարհիս խարտեաշս այս և աղէբեկ ծայրիւ հերաց Երուանդեանս Տիգրան, երեսաւք գունեան և մեղուակն, անձնեայն և թիկնաւէտն, առոյգաբարձն և գեղեցկոտն, պարկեշտն ՚ի կերակուրս և յըմպելիս, և ՚ի խրախճանութիւնս աւրինաւոր· զորմէ ասէին ՚ի հինսն մեր, որք բամբռամբն երգէին, լինել սմա և ՚ի ցանկութիւնս մարմնոյն չափաւոր· մեծիմաստն և պերճաբան և յամենայն, որ ինչ

*մարդկութեան, պիտանի։ Եւ զի՞նչ ինձ 'ի գիրս յայսոսիկ արդեւք իցէ բան սիրելի, քան թէ՝ որ յաղագս սորա էին գովեստք և պատմութիւնք՝ յերկարել։ Արդարադատ և հաւասարասէր կշիռս ունելով յամենայնի, զամենայն ուրուք կենցաղ մտացըն լծակաւ կշռէր։ Ոչ ընդ լաւագոյնսն խանդայր և ոչ զնուաստսն արհամարհէր, այլ ամենեցուն հաւասարակաց հնարէր զխնամոցն իւրոց 'ի վերայ տարածել զգեստս։*

---

## Թ. Ն Ո Ց Ն։

---

### Ա. ԹՈՒՂԹ ԱԲԳԱՐՈՒ ԱՌ ՓՐԿԻՉՆ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ։

*Աբգար Արշամայ՝ իշխան աշխարհի առ Յիսուս Փրկիչ և բարերար, որ երևեցար աշխարհի Երուսաղէմացւոց, ողջոյն։*

*Լուեալ է իմ վասն քո և վասն բժշկութեանդ, որ լինին 'ի ձեռս քո առանց դեղոց և արմատոց. զի որպէս ասի, տաս դու կուրաց տեսանել և կաղաց գնալ և զբորոտս սրբել, և զայսս պիղծս հանես, և որք միանգամ չարչարեալ են ընդ երկար հիւանդութեամբք՝ բժշկես. դու և զմեռեալս յարուցանես։ Եւ իբրև լուայ վասն քո զայս ամենայն, եդի 'ի մտի իմում մի յերկուց աստի. կամ թէ դու աս-*

տուած իցես, իջեալ յերկնից գործես զայդ. կամ թէ որդի իցես դու աստուծոյ, և զայդ առնես։ Արդ վասն այնորիկ գրեցի ես առ քեզ՝ աղաչել զքեզ, զի աշխատ լինիցիս և եկեսցես առ իս և բժշկեսցես զհիւանդութիւնս, զոր ունիմ ես։ Նա և լուայ, զի Հրեայք տրտնջեն զքէն և կամին չարչարել զքեզ. բայց քաղաք մի փոքրիկ և գեղեցիկ է իմ, և բաւական է մեզ երկոցունցս։

Որոց տարեալ զթուղթն, պատահեցին Նմա յԵրուսաղէմ։ Զայս վկայէ աւետարանական բանն, եթէ էին ոմանք 'ի հեթանոսաց ելելոց առ Նա. վասն որոյ ոչ համարձակէին, որք լուանն, ասել ցՅիսուս, այլ ասեն ցՓիլիպպոս և ցԱնդրէաս. և նոքա ասեն ցՅիսուս։ Իսկ ինքն Փրկիչն յայնմ ժամանակի, յորում կոչեացն զնա, ոչ առ յանձն. բայց թղթոյ արժանի արար զնա, որ ունի այսպէս։

## Բ. ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ ԱԲԳԱՐՈՒ, ԶՈՐ ԳՐԵԱՑ ԹՈՒՄԱՍ ԱՌԱՔԵԱԼՆ ՀՐԱՄԱՆԱՒ ՓՐԿՉԻՆ։

Երանի իցէ այնմ, որ հաւատայ յիս՝ իբրև ոչ իցէ նորա տեսեալ զիս. զի գրեալ է վասն իմ այսպէս. զի որք տեսանենն զիս՝ ոչ հաւատասցեն յիս, և որք ոչն տեսանիցեն՝ նոքա հաւատասցեն և կեցցեն։ Իսկ վասն այնր զի գրեցեր դու առ իս գալ ինձ առ քեզ, արժան է ինձ կատարել աստ զամե-

*նոյն ինչ, վասն որոյ առաքեցայ ես։ Եւ իբրև կատարեցից զայս, ապա համբարձայց առ այն, որ առաքեացն զիս. և յորժամ համբարձայց, առաքեցից զմի յաշակերտաց աստի իմոց, զի զցաւս քո բժշկեսցէ և կեանս քեզ և որոց ընդ քեզ են՝ շնորհեսցէ։*

*Զայս թուղթ եբեր Անան սուրհանդակ Աբգարու, ընդ որում և զկենդանագրութիւն փրկչական պատկերին, որ կայ յԵդեսացւոց քաղաքին մինչև ցայսաւր ժամանակի։*

---

## Ժ. ՓԱՒՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԱՑԻ։

---

### ՑԱՂԱԳՍ ՄՈՒՇԵՂԻ ՍՊԱՐԱՊԵՏԻՆ ՀԱՅՈՑ։

*Այլ քաջն զաւրավարն սպարապետն Հայոց լի էր քինիւ մեծաւ և բազում նախանձու զամենայն աւուրս կենաց իւրոց, և միամտութեամբ և արդար վաստակով ջանայր հանապազ և վաստակէր 'ի վերայ թագաւորութեանն Հայոց աշխարհին։ Զտիւ և զգիշեր կայր յաշխատութեանն. ջանայր և ճգնէր կալ 'ի ճակատու պատերազմին և ոչ թողոյր բնաւ ամենևին և ոչ քան զկորի մի գետին 'ի սահմանաց երկրին Հայոց ուրեք վտարել. 'ի վերայ աշխարհին կեալ և մեռանել, 'ի վերայ անուանն քաջութեան,*

*'ի վերայ բնակ տերանց և 'ի վերայ բնակչաց աշխարհին, 'ի վերայ քրիստոնէութեանն հաւատոյ, 'ի վերայ հաւատացեալ յաստուած և 'ի Քրիստոս մկրտեալ ժողովրդոց, 'ի վերայ եկեղեցեաց և 'ի վերայ նուիրեալ սպասուց, 'ի վերայ վկայարանացն Քրիստոսի, 'ի վերայ ուխտի աստուծոյ, 'ի վերայ քերց և եղբարց, 'ի վերայ մերձաւորաց տոհմին, 'ի վերայ բարեկաց բարեկիր բարեկամաց, հանապազ կայր զաւրավարն Մուշեղ 'ի նահատակութեան պատերազմին՝ զանձն փոխանակ առնել աշխարհին. և յանձն իւր անխայէր 'ի մեռանել, զամենայն աւուրս կենաց իւրոց առաջի իւրոց բնակ տերանցն Արշակունեաց վաստակէր:*

---

## ԺԱ. ՆՈՅՆ:

---

### Ա. ՅԱՂԱԳՍ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԵՒ ՎԱՐՈՒՑ ՆՈՐԱ ԵՒ ԱՆՄՏՈՒԹԵԱՆ ԵՒ ՇԱՂԱՇՈՒՏ ԽԱՒՍԻՑՆ ԵՒ ԳՈՐԾՈՑՆ ԵՒ ՆՇԱՆԱՑՆ՝ ՈՐ ՅԱՍՏՈՒԾՈՅ 'Ի ՎԵՐԱՅ ՆՈՐԱ ԵՂԵՆ։

*Այլ Յոհան եպիսկոպոս, որդի Փառինայ հայրապետի, հինաւուրց. թէ արժան իցէ զնա կոչել եպիսկոպոս: Եւ էր սա այր կեղծաւոր և երևեցուցանէր ինքն զանձն իւր մարդկան պահող և խորգահանդեձ. մինչ զի մոյգս անգամ ոչ ագանէր, այլ զամառն հեսկով պատէր (զոտսն) և զձմեռն կե-*

մով։ Եւ յագահութեան առանց չափոյ էր հեղեալ, և ոչ կարէր տալ զագահութիւն իւր ընդ երկեղն (երկիւղէն) աստուծոյ՝ այնչափ ինչ, զի զերս անարժանս և չհաւատալիս գործէր։

Զի էր երբեմն դիպեալ 'ի ճանապարհի ուրեմն, զի նստէր նա 'ի գրաստու վերայ և գայր. եկն դիպեցաւ սմա աւտար պատանի մի աշխարհական հեծեալ 'ի ձի, սուսեր ընդ մէջ, թուր ըզգաւտւոյ, ազեղնակապարճ զմիջով. լուացեալ զհերս իւր ածեալ մերձեալ, վարսակալ եդեալ 'ի գլուխ իւր և աւդիկ արկեալ զուսովք իւր. և գայր զճանապարհս իւր թերևս յաւագակութենէ։ Իսկ ձին՝ յորում հեծեալ՝ մեծ հասակաւ, և էր գունաւոր, գնացող, մինչ զի 'ի բացէ տեսանէր եպիսկոպոսն Յոհան զձին, մեծապէս զարմացեալ՝ ակնկառոյց լինէր։ Ապա իբրև եկն մերձեցաւ հեծեալն մաւտ 'ի նա անդր, ապա սպասեալ Յոհաննու՝ բուռն հարկանէր զերասանակաց ձիոյն և ասէր. էջ դու վաղվաղակի 'ի ձիոյ այտի, զի բանք են ինձ ընդ քեզ։ Ասէ այրն. զի ոչ դու զիս գիտես և ոչ ես զքեզ, զի՞նչ այն բանք իցեն, զոր դու ընդ իս իցես խաւսելոյ։ Մանաւանդ զի այրն արբեալ ևս դիպեցաւ և շատ յամառեաց այրն իջանել 'ի ձիոյն։ Ապա բռնադատեաց զնա Յոհան, իջոյց 'ի ձիոյ անտի. և առ տարաւ զնա մեկուսի 'ի ճանապարհէն։ Եւ առնն խոնարհել հրամայէր և ասէր. զերիցութեան ձեռն դնեմ 'ի վերայ քո։ Իսկ նա տայր պատասխանի զանձնէն, եթէ այր աւազակ սպանող չարագործ և խառնա-

գնաց լեալ 'ի մանկութենէ իմմէ, ես ոչ ինչ եմ արժանի այդպիսի իրաց. և այժմ դեռ 'ի նմին գործ կամ։ Եւ շատ 'ի վէգ եկեալ յամառէր այրն, և նա ևս չար քան զնա։ Ապա բռնաբար զգետնեալ զայրն, դնէր Յոհան զձեռն իւր՝ առնել զնա երէց. և յարուցեալ հրամայէր լուծանել զհանգոյցս մեկնոցին և արկանել նմա աղաբողոն։ Եւ ասէր. երթ 'ի գեւղ քո, և լիջիր դու անդ երէց գեղջն՝ ուստի ես։ Եւ անգամ ոչ գիտէր զայրն, թէ յորմէ՛ գեղջէ իցէ։ Ինքն Յոհան մատուցեալ բուռն հարկանէր զձիոյն և ասէր. այս ինձ կաւշիկք լիցին, փոխանակ զի երէց արարի զքեզ։ Իսկ այրն յամառեալ 'ի վերայ ձիոյն չառնոյր յանձն տալ. ապա բռնաբար յինքն հանեալ զձին և զայրն արձակեաց։ Եւ այս ամենայն իրքս վասն ձիոյն եղեն։

Ապա այրն թէ ոչ կամաւք՝ աղէբողոն արկեալ, գնայր 'ի տուն իւր և երթեալ մտանէր 'ի մէջ ընտանեաց իւրոց, ասէ ցկին իւր և ցընտանիս. արիք յաղաւթս կամք։ Եւ նոքա ասեն. մոլիս դու, դե՞ւ ուրեմն հարաւ 'ի քեզ։ Իսկ նա ասէ. արիք կամք յաղաւթս, վասն զի երէց եմ։ Իսկ նոքա զարմացեալ՝ մերթ շիկնէին, մերթ ծիծաղէին. մինչև բազում անգամ յամառեալք, ապա ուրեմն հաւանեցան կալ յաղաւթս ընդ նմա։ Ապա ասէ կինն ցայրն իւր. ո՞չ դու երախայ էիր, և չէիր մկրտեալ։ Ասէ այրն ցկինն իւր. ապշեցոյց, չետ յիշել, և ոչ ես յիշեցի զայդ ասել ցնա. զիս երէց արար և զձին սանձաւ թամբաւ առ և անց։ Եւ ասեն ցայրն

ընտանիքն իւր. յարիցես՝ անդրէն գնասցես առ եպիսկոպոսն և ասասցես. մկրտեալ չէի, զի՞ արարեր զիս երէց։ Իսկ նորա յարուցեալ գնացեալ առ եպիսկոպոսն, ասէ ցնա. ես մկրտեալ չէի, զի՞ արարեր զիս երէց։ Եւ ասէ Յոհան. սափորով միով ջուր բերէք։ Եւ առեալ զջուրն էարկ զգլխով նորա և ասէ. երթ, մկրտեցի զքեզ։ Եւ արձակէր զայրն վաղվաղակի յիւրմէ։

## Բ. ՅԱՂԱԳՍ ՆՈՐԻՆ ՅՈՀԱՆՆՈՒ։

Երբեմն սոյն Յոհան անցանէր առ այգեաւք ուրումն. և էր ժամանակն զայգիսն յատելոյ։ Աղաղակէր առ նա այր մի յայգւոյն և ասէ. աւրհնեա, տէր եպիսկոպոս, զմեզ և զայգիսս։ Ասէ Յոհան. փուշ և տատասկ բուսցի։ Ասէ այրն. 'ի մարմինդ քո բուսցի փուշ և տատասկ, փոխանակ զի տարապարտուց անիծանես զմեզ։ Եւ եղեն նշանք յաստուծոյ. զի իբրև չոգաւ եպիսկոպոսն 'ի վանս իւր, հասին հարուածք 'ի վերայ նորա, սկսաւ ընդ ամենայն անդամս մարմնոյ նորա որպէս զփուշ հարկանել։ Եւ մեծապէս շտապեալ անկեալ 'ի տանջանս չարաչարս հարուածոց և 'ի մեծ տագնապի կայր աւուրս բազում։ Ապա յղեաց կոչեաց առ ինքն զայգործն, աղաչեաց զնա առնել 'ի վերայ նորա աղաւթս, զի փրկեսցի սա 'ի ցաւոցն։ Այգործն ասէր. իսկ ես ո՞վ եմ, զի կարեմ զոք աւրհնել կամ անիծանել. թող թէ զայր եպիսկոպոս։ Իսկ նա բռնադատէր

զնա յայնժամ, մինչև յառնէր այգորդն՝ կայր յաղաւթս և ասէր. տէր աստուած, դու գիտես՝ զի ես այր մեղաւոր եմ և անարժան, ոչ գիտեմ զաղմուկն՝ յորում ըմբռնեցայս. դու փրկեա զիս յայս 'ի չարէս, զի ասեն՝ թէ զայր եպիսկոպոս դու անիծեր, և ասեն՝ քո բանիւ եղև։ Զի լաւ էր ինձ մահ. քանզի չգիտեմ զայս՝ զոր ինչ զինէն ասեն։ Եւ զայս ասացեալ՝ անդէն բժշկեցաւ եպիսկոպոսն, և սկսաւ յամենայն մարմնոցն փուշն 'ի բաց թափել. և էր իբրև զփուշ խոտոց. վաղվաղակի յարուցեալ ողջացաւ յախտէն։

---

## ԺԲ. ԵՂԻՇԷ։

---

### ՍԷՐՆ ԱՍՏՈՒԾՈՅ։

Մեծ է սէրն աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր. և այնպէս աներկեւղս առնէ զմարդիկ՝ իբրև զանմարմին զաւրս Հրեշտակաց. որպէս անդստին 'ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում անգամ 'ի բազում տեղիս։ Մարդիկ, որ սիրովն աստուծոյ իբրև զինու վառեալք էին, ոչ ինչ խնայեցին զանգիտելով իբրև զանարի՝ գոլով վատասիրտք, կամ 'ի մահ անձանց, կամ յափշտա-

կութիւն ընչից, կամ 'ի խողխողումն սիրելեաց, կամ 'ի գերութիւն ընտանեաց. ելանել 'ի Հայրենի երկրէն և անկանել 'ի ստրկութիւն յաւտարութեան. առ ոչինչ համարեցան զայս ամենայն անցս չարչարանացն. այլ միայն միաբան կալ ընդ աստուծոյ, զի 'ի նմանէ միայն մի' գերի ելցեն. և ամենայն երևելի մեծութեանս զնա բաւական համարեցան՝ ընտրեալ 'ի միտս իւրեանց։ Եւ զուրացութիւնն մեռելութիւն վարկանէին և զմահ վասն աստուծոյ անանց կենդանութիւն և ծառայել յերկրի՝ ազատութիւն կենաց իւրեանց և ընկենուլ զանձինս յաւտարութիւն՝ ընդ աստուծոյ գիւտից։

---

## ԺԳ. ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ։

---

### ՀՐԱՒԻՐԵԼ ՍՊԱՐԱՊԵՏԻՆ ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՆԱՅ՝ ՀՐԱՊԱՐԱԿԱՒ ԸՆԴԴԻՄԱՆԱԼ ՄՈԳԱԿՐԱՒՆԻԿՆ ՊԱՐՍԻՑ։

Իսկ մոգքն՝ որ 'ի դրանէն նախարարքն Հայոց ուսուցիչս ածեալ էին ընդ ինքեանս, իբրև տեսին, թէ արհամարհեալ են յաչս նոցա ինքեանք և աւրէնք նոցա, քանզի կանայք նախարարացն, զորս կարծէին մոգքն աշակերտել՝ այնք և տեսանել անգամ զարշէին զնոսա, այլ զորդիս իւրեանց և զդստերս պատուիրէին ստէպ դաստիարակացն՝ չանցուցանել

երբէք առ նոքաւք մաւտ, իսկ արքն՝ որք պատճառանաւք կարծեցուցանէին զինքեանս ուրացեալս, սուտ վարդապետացն և հաց ուտել առաջի իւրեանց չտային թոյլ, և շրջէին ողորմելի սովամահք. գնալ 'ի բաց և փախչել չիշխէին, և կալն առ նոսա՝ զմահ ծանուցանէր նոցա և զկորուստ, և տակաւին գրել զաղտ 'ի դուռն զիրս ապստամբութեանն փութանային։

Ապա իմացեալ սպարապետին Հայոց Վարդանայ՝ թէ կարի հուշակին իրք ապստամբութեանն, և 'ի կարի հեղգալոյն մեծամեծ գործէին վնասք, խորհուրդ 'ի մէջ առեալ զաւուրս բազումս, և ժողովեալ զպատուական եպիսկոպոսս և զականաւոր երիցունս և զաւագ տանուտեարսն Հայոց և զսեպուհսն առանձինն, չև դեռ ևս յայնմ ժամու կամեցեալ յայտնել զբանսն իւրեանց մարզպանին Հայոց Վասակայ, գիտելով ոչ միայն լոկ վասն որդւոցն և եթ զկասումն առն 'ի փրկութեան դարձէն, այլ զառաւել փառասէր աստուածատեաց խորհրդոց նորա ճանաչեալ զորոճմունս, ասէր ցամենեսեան այնուհետև յայտնապէս այրն երանելին Վարդան. թէ մինչև ցե՞րբ հանդուրժեմք թագուցանել զճշմարտութիւնն և կորնչիմք. այլ յայտնի լուսով գնասցուք, իբրև 'ի տուընջեան և որդիս լուսոյ կոչեսցուք. և այս համբաւ ելեալ տարածեալ ելից զամենայն տեղիս։

---

## ԺԴ. ԵՂԻՑԷ:

### ՊԱՏԵՐԱԶՄ ՀԱՅՈՑ ԵՒ ՊԱՐՍԻՑ ԱՌ ԱՓՆ ՏՂՄՈՒՏ ԳԵՏՈՅՆ։

Երկոքեան (պարսից և Հայոց) կողմանքն լի սրտամտութեամբ և մեծաւ բարկութեամբ զայրանային և գազանացեալ զաւրութեամբ յիրեարս յարձակէին երկոքեան. և ամբոխ աղաղակին երկոցունց կողմանց՝ իբրև ՚ի մէջ ամպոց շփոթելոց՝ ճայթմունս գործէր, և հնչումն ձայնից զքարանձաւս լերանցն շարժէր։ ՚Ի բազմութենէ սաղաւարտիցն և ՚ի փայլիւն պատենազէն վառելոցն իբրև նշոյլք ճառագայթից արեգական հատանէին։ Նա և ՚ի բազում սուսերացն շողալ և ՚ի ճաւճել բազմախուռն նիզակացն իբրև յերկնուստ ահագին հրաձգութիւնք եռային։ Քանզի ո՞վ իսկ է բաւական ասել զմեծամեծ տագնապ ահաւոր ձայնիցն, ո՛րպէս կոփիւնք վահանաւորացն և ճայթմունք լարից աղեղանցն զլսելիս ամենեցուն առ հասարակ խլացուցանէին։

Անդ էր տեսանել շտապ մեծի տագնապին և զաղէտս անբաւ տարակուսանացն երկոցունց կողմանցն, առ ՚ի յանդուգն յարձակմանէն զմիմեանս բախելով. քանզի թանձրամիտքն յիմարէին և վատասիրտքն

լքանէին, քաջքն խիզախէին և նահատակքն գոչէին։ Եւ խումբ արարեալ ամենայն բազմութեանն՝ զգետն 'ի մէջ փակէին, և զանգիտեալ գունդն պարսից 'ի դժուարութենէ գետոյն՝ զտեղեաւն զեռալ սկսան։ Իսկ գունդն Հայոց հասեալ անցանէին, ձի 'ի վերայ առեալ յարձակէին մեծաւ զաւրութեամբ։ Սաստկապէս բախեալք ընդ միմեանս, յերկոցունց կողմանց բազում վիրաւորք յերկիր անկեալ դիաթաւալ խաղային։

Յայնմ մեծ տագնապի 'ի վեր հայեցաւ քաջն Վարդան և տեսանէր զընտիր ընտիր քաջ նահատակաց պարսից զաւրուն՝ զի զձախակողմն շարժեցին զհայոց գնդին, մեծաւ ուժով յարձակէր 'ի տեղին և զաջ թևն պարսից գնդին բեկեալ՝ արկանէր զգազանաւքն և շրջան առեալ կոտորէր մինչև 'ի նոյն տեղի։ Եւ այնպէս շտապ տագնապի 'ի վերայ հասուցանէր, մինչև գունդն Մատեան քակեալ բաժանեցան 'ի մեծամուր պատրաստութենէն, դեռ ևս քաջ քաջ 'ի փախուստ դառնային։

Ապա դէտակն 'ի վեր համբառնայր Մուշկան Նիւսալաւուրտ, քակեալ զոմանս տեսանէր ի գնդէն Հայոց և զկնի մնացեալն 'ի հովիտս լերանցն։ Վասն որոյ վաղվաղակ բարձեալ՝ քաջալերէր շուրջ զիւրեաւ զզաւրս Արեաց, որք զտեղի առեալ կային ընդդէմ գնդին Վարդանայ։ Եւ անդէն 'ի տեղւոջն երկոքին կողմանքն զպարտութիւն խոստովանէին, և առ ոյժ թանձր անկեալ դիականց իբրև զքարակոյտս դերբկաց երևէին։

Զայն իբրև ետես Մուշկան Նիւսալաւուրտ, մը-
նայր զազանացն Արտաշրի, որ 'ի վերայ նորա նըս-
տէր 'ի բարձր դիտանոցին իբրև յամուր քաղաքի․
և 'ի ձայն մեծ զալարափողոցն զիւր զունդսն ստի-
պէր և յառաջամարտիկ զաւրաւքն զնա 'ի մէջ
փակէր։

Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակ-
ցաւքն ոչ սակաւ նախճիրս 'ի տեղւոջն գործեաց,
յորում տեղւոջ և ինքն իսկ արժանի եղև առ-
նուլ զկատարեալ նահատակութեանն պսակ։

Եւ յերկարեալ գործոյ պատերազմին՝ աւրն տա-
րաժամէր և մաւտ առ երեկս կարճատէր․ բազմաց
աւրահասք մահու հասանէին, մանաւանդ 'ի թանձ-
րութենէ դիականց մաւտ առ մաւտ խտացեալ
իբրև զփայտահարս մայրաւորաց։

Անդ էր տեսանել զբեկումն նիզակացն և զխոր-
տակումն աղեղանց․ վասն այնորիկ և ոչ կարէին
կալ ճշմարտիւ 'ի վերայ սուրբ մարմնոյ երանե-
լեացն․ և սաստիկ խուճապ տագնապի էր կողմանցն
երկոցունց անկելոց։ Եւ որք մնացեալք էին՝ վատ-
նեալք և ցրուեալք լինէին 'ի լեռնադաշտս ամուր
ձորոցն․ և յորժամ պատահէին միմեանց՝ դարձեալ
միւսանգամ զմիմեանս սատակէին։ Եւ մինչև 'ի
մուտս արեգականն անդադար լինէր գործ դառնու-
թեանն։

Եւ քանզի գարնանային էր ժամանակն, ծաղ-
կալից դաշտքն դառնային յորդահոսանս արեանց
բազմաց։ Մանաւանդ յորժամ տեսանէր ոք զբազ-

մակոյտ դիականցն անկելոց, սիրտն բեկանէր և ադիքն գալարէին՝ լսել զմնչիւն խոցելոցն և զմռնչիւնս բեկելոցն, զթաւալգլոր խաղալ սողալ վիրաւորացն, զփախուստ վատացն, զթաքուստ լքելոցն, զարտաթափումն զանարի արանցն, զճչիւն կանացեացն, զողբս սիրելեաց, զաշխարումն մերձաւորաց, զվայ և զաւաղ բարեկամացն։ Քանզի ոչ եթէ կողմ էր, որ յաղթեաց, և կողմ էր, որ պարտեցաւ, այլ քաջք ընդ քաջս ելեալ՝ երկոքին կողմանքն 'ի պարտութիւն մատնեցան։

Բայց քանզի անկեալ էր մեծ սպարապետն Հայոց 'ի պատերազմին, ոչ ոք գոյր այնուհետև 'ի մէջ գլխաւոր՝ յոր յեցեալ ժողովէին գունդն մնացելոցն։

---

## ԺԵ. ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ։

---

### ԹՈՒՂԹ ԱՌ ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ։

Ահա անզգամեցայ և ճառեմ. ներեա, աղաչեմ, փոքր մի անզգամութեանս իմոյ։ Ապա ստոյգ՝ առաւել քեզ իսկ էր արժանի։

Եւ եմ ես այն Ղազար՝ ըստ առ 'ի քէն և այլոց բազմաց ասացածի, որում ոչ ոք գոյ փոխանակ։ Իսկ այժմ առ Նախանձու աղէտի՝ բազումք նկրտէին լինել իմ փոխանակ. բայց եթէ իցեն։

Քանզի 'ի սկզբանէ արարածոց բազում աւճիրս գործեաց Նախանձ յաշխարհի։ Անդէն և անդ 'ի սկզբանն զնախաստեղծն ընկճեալ՝ Նախանձու բանսարկուին՝ դարձոյց զնա 'ի հող. և վկայէ գիր 'ի Կաթուղիկէսն, թէ Նախանձու բանսարկուին եմուտ մահ յաշխարհ՝ եղբայրասպանութեամբ զաւակաց երկուցն միայնոյ՝ դեռ ևս յԱդամայ ծնելոց յաշխարհ Կայէնի և Հաբելի, որպէս 'ի փոքրիկ և 'ի նեղ՝ յանբաւ բնակութիւն տիեզերաց հայեցուցեալ զԿայէն Նախանձարկու դիւին։ Ի ձեռն Նախանձու գրգռեալ Եսաւ 'ի վերայ Յակովբայ՝ մահ խորհէր։ Ի ձեռն Նախանձու զանմեղն Յովսէփ՝ մոլեգնութեամբ եղբարքն՝ 'ի ստրկութիւն վաճառեցին։ Եւ 'ի ձեռն Նախանձու զերկուս հոգեշնորհ անձինս՝ զԱհարաւն և զՄարիամ, յանարժան խորհուրդ յանդգնեցուցեալ՝ բորոտեցուցանէր զմարգարէ կինն։ Ի ձեռն Նախանձու զախոյեանաբեկ և զժողովրդակեցոյց զայրն զԴաւիթ՝ անհանգիստ որսայր Սաւուղ 'ի կորուսանել։

Եւ արդ զի՞նչ ևս ասեմ. զարարիչն և զտէր Յիսուս Քրիստոս՝ առ Նախանձու ժողովուրդք հրէից և քահանայապետք՝ նախ ժամանակաւ ձաղեալ այպանէին, կոչելով զնա երբեմն կախարդ, յասելն, թէ Բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա դդևս. և դարձեալ՝ զինեմոլ անուանէին և զեխասէր, ասելով ցաշակերտսն. թէ ընդէ՞ր վարդապետն ձեր խառն ընդ մեղաւորս ուտէ և ըմպէ։ Այլ և չպահեցողութեամբ և անժամակերութեամբ եպե-

րէին. ասեն՝ ընդէ՞ր աշակերտքն Յովհաննու և փարիսեցիքն պահեն, և քո աշակերտքդ խառն ուտեն։ Կոչեցին զնա և դիւահար. Ո՞չ, ասեն, ստոյգ ասեմք, թէ Սամարացի ես դու, և դև գոյ 'ի քեզ։ Եւ ժողովեալ սուտ վկայս՝ առ մոլեգնութեան քինուն՝ զինչ պէտս տային խաւսել, և քրքուէին խրախացեալք առաջի դատողացն. ուր ծանուցեալ Պիղատոսի ըստ վկայութեան աւետարանչին, թէ առ նախանձու մատնեցին զնա, լուացեալ զձեռս՝ ասէ. անպարտ եմ ես յարենէ առնդ, զի ոչ ինչ գտի 'ի դմա վնաս արժանի մահու. դուք առէք և ըստ ձեր աւրինաց դատեցարուք։ Եւ ընկեցեալ զնա յաւրէնսն և 'ի ժողովուրդս, որք էին երկոքեան մահապարտք՝ և ժողովուրդք հրէից և աւրէնքն։ Որոց չհանդուրժեալ դիւամոլ նախանձուն՝ վճռակեցին մահու, և ոչ ուղղոց, այլ անիծից, իբրև զչարագործ և մարդասպան. այսինքն՝ խաչի, զարարիչն և զնորոգիչն, զկենսատուն և զմահասպան, զերախտաւորն առ ամենեսեան, զքաղցրն և զբազմողորմն։

Եւ զայս ամենայն կարիս կրեալ յանձն իւր յաղագս մեր՝ զնոյն և իւրոց աշակերտացն ստէպ զգուշացուցանէր, թէ և ձեզ դիպելոց է այս ամենայն. յորում մի՛ իբրև զանկարգս և զանպատրաստ գտեալք հասելոց 'ի վերայ ձեր վշտացն՝ զանգիտիցէք։ Եթէ զիս սիրեցին՝ ապա և զձեզ սիրեսցեն. եթէ զիս ընկալան, և զձեզ ընդունին. ապա թէ զիս հալածեցին՝ և զձեզ հալածեն. եթէ զիս ատեցին՝

և զձեզ ատեն. և եթէ զիս՝ որ տանուտէր էի՝ Բէեղզեբուղ կարդացին, ո՞րչափ ևս առաւել զձեզ և զընտանիս իմ։

Դորին նմանեաւք ըստ ժամանակի որսացեալ առ Նախանձու կուտէին 'ի վերայ իմ բազում բանսարկութիւնս՝ ասելով. եթէ Ղազար ասէ, թէ պոռնկութիւն մեղք չեն. զոյն և մարգպանին սադրէ։ Եւ եթէ ընդէ՞ր այդ այդպէս դու, տէր, քաջ գիտես քան զսուտ կարծաւղսն։ Եւ ընդունէին զեղխ և անսուրբ անձինք քաղցր ախորժելով զլուր այդպիսի բանից՝ 'ի սատարութիւն բունելոց յինքեանս չար գործոցն։

Արդ ո՞ր ոք յանաւրինաց՝ թող թէ 'ի քրիստոնէից՝ 'ի միտս իւր խորհել զայսպիսի ինչ բան, թող թէ և առ այլում զայսպիսի շշնջել բան, ո՞ր անմիտ, ո՞ր տգէտ, ո՞ր հրեայ, ո՞ր այլազգն։ Եւ Ղազա՞ր զայդ քարոզէր. ո՞ւմ և կամ ո՞ւր և կամ ե՞րբ. —որ տգէտն է գրոց, որ անհրահանգն է յուսմունս, որ մովսիսական աւրինացն աւտար է և քրիստոսատուր շնորհին անտեղեակ։ Եւ չիցե՞ն արդեաւք աբեղեանս հայոց արժանի ողբոց արտասուաց և բազում սգոյ՝ համբաւել զանպիտանս, խաւսել առ Նախանձու զանարժանս։

## ԺԶ. ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ:

---

### ՅԱՂԱԳՍ ՔԵՇԻՆ ՊԱՐՍԻՑ։

*Մինչ չև բնաւ էր ինչ, ասեն, ոչ երկինք և ոչ երկիր և ոչ այլ ինչ արարածք՝ որ յերկինս կամ յերկրի, Զրուան ոմն անուն էր, որ թարգմանի բախտ կամ փառք։ Հազար ամ յաշտ արար՝ զի թերևս որդի մի լինիցի նմա, որում անուն Որմիզդ, որ զերկինս և զերկիր և զամենայն, որ 'ի նոսա՝ առնիցէ. և յետ հազար ամի յաշտ առնելոյ՝ սկսաւ ածել զմտաւ, ասէ. ուգո՞ւտ ինչ իցէ յաշտս, զոր առնեմ, և լինիցի՞ ինձ որդի Որմիզդ եթէ 'ի զուր ինչ ջանայցեմ։ Եւ մինչ դեռ նա զայս խորհէր, Որմիզդ և Արհմն յղեցան յարգանդի հաւր իւրեանց՝ Որմիզդն 'ի յաշտն առնելոյ և Արհմն 'ի յերկուանալոյ անտի։ Ապա իմացեալ Զրուանայ, ասէ. երկու որդիք են յորովայնի անդ, որ ոք 'ի նոցանէ վաղ առ իս հասցէ՝ զնա թագաւոր արարից. և ծանուցեալ Որմըզդի զխորհուրդս հաւրն՝ յայտնեաց Արհմենին. ասէ. Զրուան հայր մեր խորհեցաւ՝ թէ ոք 'ի մէնջ վաղ առ նա երթիցէ, զնա թագաւորեցուցէ։ Եւ զայն լուեալ Արհմենին՝ ծակեաց զորովայնն և ել եկաց առաջի հաւրն։ Եւ տեսեալ զնա Զրուանայ, ոչ գիտաց, եթէ ո ոք իցէ.*

և հարցանէր՝ եթէ ո՞վ ես դու։ Եւ նա ասէ. ես եմ որդին քո։ Ասէ ցնա Զրուան. իմ որդին անուշահոտ և լուսաւոր է՝ և դու խաւարին և ժանտահոտ ես։ Եւ մինչ դեռ նոքա զայս ընդ միմեանս խաւսէին, ծնեալ Որմըզդի ՚ի ժամու իւրում լուսաւոր և անուշահոտ, եկն եկաց առաջի Զրուանայ։ Եւ տեսեալ զնա Զրուանայ, գիտաց՝ եթէ Որմիզդ որդի նորա է, վասն որոյ զյաշտն առնէր. և առեալ զբարսմունսն՝ զոր ՚ի ձեռին իւրում ունէր, որովք զյաշտն առնէր, ետ ցՈրմիզդ և ասէ. ցայժմ ես վասն քո յաշտ առնէի, յայսմ հետէ դու վասն իմ առնիցես։ Եւ ՚ի տալ Զրուանայ զբարսմունսն ցՈրմիզդ և աւրհնել զնա, մատուցեալ Արհմենի առաջի Զրուանայ՝ ասէ ցնա. ո՞չ այնպէս ուխտեցեր՝ թէ ո ոք յերկուց որդւոցն իմոց յառաջ առ իս հասցէ, զնա թագաւոր արարից։ Եւ Զրուանն առ ՚ի չլրելոյ զուխտն՝ ասէ ցԱրհմն. ո՜վ սուտ և չարագործ, տուեալ լիցի քեզ թագաւորութիւնն ինն հազար ամի, և զՈրմիզդ ՚ի վերայ քո արքայ կացուցեալ. և յետ ինն հազար ամի Որմիզդ թագաւորեսցէ, և զինչ կամիցի առնել՝ արասցէ։ Յայնժամ սկսան Որմիզդ և Արհմն առնել արարածս. և ամենայն ինչ՝ զոր Որմիզդն առնէր՝ բարի էր և ուղիղ, և զոր ինչ Արհմն գործէր՝ չար էր և թիւր։

---

## ԺԷ. ՍԵՐԷՈՍ։

---

### ԽՆԴՐԵԼ ԿԱՅՍԵՐՆ ՄԱՒՐԿԱՅ ԶՄԱՐՄԻՆ ԴԱՆԻԷԼԻ 'Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ԽՈՍՐՈՎԱՅ։

*Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ խնդրեաց Թագաւորն յունաց 'ի Թագաւորէն պարսից զմարմին մեռելոյ առն այնորիկ՝ որ կայր 'ի Շաւշ քաղաքի, 'ի գանձու արքային՝ եդեալ 'ի պղնձի աւազանի՝ զոր պարսիկն անուանէ Կաւ Խոսրով և քրիստոնեայքն ասեն զԴանիէլի մարգարէի։ Եւ արքայն Խոսրով հրամայէ տալ նմա զխնդիրն։ Իսկ տիկինն Շիրին յոյժ խռովեալ էր 'ի վերայ իրացն. իբրև ոչինչ կարաց առնել՝ զկամս Թագաւորին դարձուցանել, հրաման ետ ամենայն քրիստոնէից աշխարհին՝ զի պահաւք և աղաւթիւք խնդրեսցեն 'ի Քրիստոսէ, զի մի' շարժեալ գնասցէ յաշխարհէն շնորհն այն։*

*Եւ ժողովեալ ամենայն երկիրն 'ի տեղին յայն, ուժգին խնդրուածովք և արտասուագոչ ողբովք խնդրէին 'ի Քրիստոսէ արգելուլ։ Եւ ածեալ նմա ջորիս և բերեալ նմա դեսպակ արքունի, և առին գնացին։ Իսկ իբրև ելին ընդ դուռն քաղաքին, յանկարծաւրէն ցամաքեցան աղբեւրքն՝ որ ելանէին 'ի մէջ քաղաքին և հօսէին արտաքս, և ամենայն երկիրն վայիւ և աղաղակաւ գնային զհետ նորա։*

Եւ եղև իբրև մեկնեցաւ 'ի քաղաքէն ասպարէզս երիս՝ յանկարծակի զտեղի առին Ջորիքն՝ որ 'ի դեսպակին. և ոչ ոք կարաց զնոսա շարժել 'ի տեղւոջէն։ Եւ դարձեալ անդրէն յանկարծակի բըռնաբար սուր սուր հարկանելով զամբոխն պատառեցին և զզունդն բռնութեամբ և ընթացան անդրէն 'ի քաղաքն. և եղև իբրև մտին ընդ դուռն քաղաքին՝ անդրէն արձակեալ բղխեցին ջուրք գետոյն, և հոսէին ջուրքն արտաքս լի յորձանաւք ջուրց իբրև զառաջինն։

Գիտութիւն արարին կայսերն վասն նորա փութանակի։ Եւ նորա տուեալ տանել նմա պատարագս, հրամայեաց առնել, որպէս և նայն կամեցաւ. թողին զնա և գնացին 'ի բաց։

---

## ԺԸ. ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ։

---

### ՎԱՍՆ ՏԻԵԶԵՐԱՀՌՉԱԿ ՔԱՂԱՔԻՆ ԱՆԻՈՅ ԽՈՂԽՈՂՄԱՆ ՍՐՈՎ։

Ամուրն Անի և. որ շուրջ զնովաւ դստերք իւր՝ առաւել յամբարտաւանութիւն կրթեալ՝ ընդդէմ երկնից կայթս հարկանէին. մինչև շարժեաց աստուած զթագաւորն պարսից՝ փոխանակ ինքեան՝ տեսանել, թէ զի՞նչ գործի 'ի նմա։ Եղև գործ պատերազմի յերկիրս հայոց ընդարձակեցուցանել զըն-

կութիւնս իւրեանց և տիրել 'ի վերայ սահմանի
այլոյ թագաւորութեան. և էր թուականիս մերոյ
ամք հինգհարիւր երեքտասան (ՌԿԴ Քրիստոսի
ծննդեան)։

Արդ եկեալ հասանէր թագաւորն բազում բեւ-
րուք և անթիւ սպառազինաւք. մտեալ յաշխարհս
մեր՝ ահ և երկեւղ հասուցանէր հեռաւորաց և
մերձաւորաց. կոխէր, տապալէր զաշխարհս բազումս,
մինչև եհաս 'ի քաղաք՝ որ զմեզս իւր 'ի կատա-
րումն լրիւ իւրով ունէր։ Կանգնեաց զխորանն իւր
ընդդէմ քաղաքին Անւոյ և տարածեաց զբանակս ընդ
լայնութիւն երկրին. ջանայր, հնարէր՝ զի զդուռն
երկաթի և զնիգս պղնձի 'ի բաց խլեսցէ, որ կայր
ընդդէմ թագաւորութեանն իւրոյ. և անյոյս լեալ
յաղագս ամրութեանն՝ թէպէտ և զմարտն սաստ-
կացուցանէր, կամէր չուել։ Եւ զայն ոչ գիտացեալ,
թէ էարկ տէր 'ի մէջ պահապանաց և իշխանացն
երկպառակութիւն և անմիաբանութիւն, ամբոխու-
մն և բաժանումն. և անդէն թողեալ զգործ պա-
տերազմին՝ 'ի փախուստ դարձան և խուճապեալք
յերկեղէն (յերկիւղէն)՝ ոչ ոք յազգայինսն կամ 'ի
կարեւոր բարեկամսն հայեցաւ, այլ իւրաքանչիւր ոք
ահիւ ըմբռնեալ։ Եւ տեսեալ զայս սպառազէն զաւ-
րացն՝ որ արտաքոյ մարտնչէին, հանդէպ ինքեանց 'ի
վերայ պարսպին ճանապարհ առնէին և իբրև զկու-
տակումն ալեաց ծովու 'ի ծոց քաղաքին հեղուին
և զպարսկական սուրն 'ի գործ արկեալ, ո՛չ ումեք
խնայէին։ Իսկ բազմութիւն արանց և կանանց յա-

պարանս Թագաւորացն դիմեալ՝ իբր թէ կարիցեն ապրիլ, և այլքն ճողոպրեալ յամուրն, որ Ներքի բերդ կոչի։ Իսկ որ 'ի մէջ քաղաքին ամրացեալ էին, իբրև գիտացին թշնամիքն, թէ անպատրաստք են, և ոչ գոյ 'ի նոսա այր պատերազմաւղ կամ կերակուր և ըմպելի, վաղվաղակի շուրջ պատեալ և շտապ տագնապի հասուցանէին, մինչև յակամայ արտաքս հանին։

Անդ էր տեսանել զվիշտս և զտագնապս իւրաքանչիւր հասակի. զի 'ի գրկաց մարցն յափշտակեալ լինէին մանկունք՝ անողորմաբար զքարի հարեալ, և մարքն արեամբ և արտասուաւք զմանկունս իւրեանց թանային. զհայր և զորդի մի սուր խողխողէր. զի ծերք և երիտասարդք, քահանայք և սարկաւագունք զմի սրոյ ճաշակ մահու ընկալան. զի լցաւ քաղաքն լի ծայրիւ և ծայրիւ, և ճանապարհ էր մարմին սպանելոցն. զի 'ի բազմութենէ կոտորելոցն և յանթուելի դիականցն՝ վտակն մեծ, որ անցանէ առ քաղաքաւն, ներկանէր արեամբ. և գազանք վայրի և ընտանի՝ եղեն գերեզման դիականցն. վասն զի ոչ գոյր, որ թաղէր և հարկաւոր հողովն ծածկէր զխողխողեալսն։ Այլ և 'ի ճարպոյ անիրաւութեանց 'ի նման գործելոցն տոչորեցաւ բարձրաշէն և գեղեցկայարմար ապարանքն, և եղև ամենայն բնակութիւնն իբրև հողաբլուր. և վաշխն և նենգութիւնն, որ 'ի նմա՝ խափանեցաւ։

Այս է բաժին անիրաւ քաղաքաց, որ շինեն զինքեանս արեամբ աւտարաց և 'ի քրտանց տնան-

կաց փարթամանան և 'ի վաշխից և յանիրաւութեանց զտունս իւրեանց ամրացուցանեն. և ինքեանք զմիտս իւրեանց անողորմ ունելով առ աղքատս և տնանկս՝ միայն հեշտութեան և փափկութեան սպասեն և 'ի գործոց աղտեղութեան ոչ խորշին, այլ միայն արբեալ լինին 'ի ցանկութեանցն, որ վնասս ըմբռնեալ ունի։ Եւ արդ զի՞նչ լինի նոցա 'ի հասանել բարկութեան տեառն. սպառին և պակասին, որպէս մոմ յերեսաց հրոյ, եթէ թագաւոր իցէ և եթէ իշխան, որպէս ծանեաք 'ի գրելոցս։ Բայց թագաւորն պարսից բազում զաւառաց տիրեալ և անթիւ աւարաւ՝ դարձաւ յաշխարհն իւր։

---

## ԺԹ. ՆՈՅՆ։

### ՄԱՐԴԻԿ՝ ՎԱՅԵԼՉՈՒԹԻՒՆ ԵՐԿՐԻ։

Զոր աւրինակ գեղեցիկ դէմք առն՝ 'ի ծաղկի հասակի սիրուն և ցանկալի տեսողացն ցուցանի, իսկ յորժամ զարդարիչ հոգին մահուամբ բաժանի 'ի նմանէ, յառաջին պայծառ և գեղեցիկ զարդուցն ահարկելի և անշուք ցուցանի տեսողացն, նաև զուլթն ընդ նմա հատանի ըստ այնմ [1], թէ մոռացեալ եղէ ես, որպէս մեռեալ 'ի սրտէ, ըստ նմին աւրինակի զերկիր է տեսանել. զի յորժամ մարդա-

1) Սաղմոս Լ, 13։

*բնակ շինութեամբ Հարստանայ, յայնժամ երկրագործք առատութեամբ սերմամբ զանդաստանս լընուն. որք յորժամ բուսանին, կանաչագեղ տեսլեամբ զվայրսն վայելչացուցանեն և բարձրաբերձ աճմամբ 'ի վեր ընձիւղին. և յորժամ զհասկիցն զկերպարանս 'ի գագաթունսն երևեցուցանեն, յայնժամ թանձրախիտ բարձրութեամբն ամպաձև տեսողացն ցուցանի, և 'ի քաղցրաշունչ աւդոյն ճաւճի, ձեմի զաւրէն ծովային ալեաց. այսպէս և Հաւտք անդէից արաւտականաց 'ի Հովիտս դալարաբեր բուսոց առ ցուրտ աղբերակամբք խայտան, խաղան, և երկիր իբրև զգայեալ՝ գեղեցիկ դիմաւք զարդարի նոքաւք ըստ այնմ[1], եթէ ցնծասցեն դաշտք և ամենայն, որ է 'ի նոսա:*

*Իսկ այժմ զնորին Հակառակն տեսանեմք. երկիր աւերակ, թափուր 'ի բնակչաց, քաղաքք կործանեալք և անդաստանք խոպանացեալք և փշաբերք աՀագին և զարՀուրելի անցաւորացն ցուցանի: Նաև քաղցրաձայն Հաւուց տարմք, որք մարդասէր բարոյիւք ընտանի գոլով մերային ազինս, որ քաղցրանուագ եղանակաւք զվայրսն Հնչեցուցանեն և յառաւաւտինսն ճռուական երգովք և բարձրաձայն կարկաչիւք զերկրագործսն 'ի քնոյն զանգաղանաց իբրև խթանաւ զարթուցեալ, իւրաքանչիւր արուեստից պատրաստաբար յորդորէին. բայց այժմ չէնք աւերակք և ամայիք և անմարդիք, և նոցա ոչ գոյր տեղի բնակութեան. զի ո՞ւր առե-*

1) Սաղմոս ՂԵ, 12:

ղունքն բոյն կառուցանեն, և ո՛ւր տկարք 'ի Թռչու-նոց 'ի նոսա ապաւինին ըստ սաղմոսին ձայնի[1]. և կամ ո՛ւր ծիծառն զիւր փարանից բունին յարդարէ՝ աներկեւղ սնուցանել զառ 'ի յինքենէ ծնեալսն։

---

## Ի. ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ։

---

### ՅԱՂԱԳՍ ՊԻՏՈՅԻՑ։

Պէտք են բացայիշատակք համառաւտ քաջա-դիպութեամբ 'ի դէմս ինչ վերաբերեալ։ Եւ ասա-ցեալ է այսպէս, յորոց եկաց կենցաղոյս աւգտա-կարագոյնն։ Եւ պիտոյից ոմանք են բանականք և ոմանք գործականք և ոմանք խառնք։ Եւ բա-նականք են, որ բանիւն միայն նշանակեն զշահն, որպիսի ինչ զառաքինութեանն զոստս քրտամբք և աշխատութեամբ, Պղատոն ասաց՝ բուսանիլ. քանզի աւգուտ այսպիսի պիտոյից՝ բանիւ ցուցա-նի։ Եւ գործականք են, որ զգործն ունին յինքեանս, որպիսի ինչ Պիթագորաս, որչափ իցէ կենցաղոյս չափ՝ հարցեալ յումեմնէ, սուղ ինչ երևեալ՝ ծած-կեցաւ. այսքան զոլ զժամանակն ընձեռեաց՝ որքան և տեսութեան չափ. աստանաւր 'ի ներքոյ կայ գործն միայն տեսութեան։ Եւ խառնք են, որ յեր-

---

1) ՃԳ, 17. Անդ թռչունք երկնից ձագս հանցեն և բոյն արագլի ապաւէն է նոցա։

կաքանչիւրոց, բանիւ և գործով, որպիսի ինչ. Դիոգինէս համբակ տեսանելով ստահակեալ, զմանկածուն տանջեաց՝ ասելով, ընդէ՞ր այդպէս դաստիարակես. աստանաւր գործ էր զանն, և բանն հարկանելոյն պատճառ. վասն որոյ և խառն է։ Արդ զանազանութիւն այս է պիտոյից։

Իսկ գործեսցես զնա գլխաւք այսպիսեաւք։ Սակաւ ինչ ասասցես նախ՝ ասողին զովութիւն։ Զկնի այնորիկ՝ զնոյն ինքն զպէտսն փոխելով ասասցես։ Ապա զպատճառն։ Ի վերայ այնորիկ և յընդդիմակէն դիցես։ Ասասցես և զառակն։ Եւ բերցես 'ի վերայ զյարացոյցն։ Եւ հաստատեսցես վկայութեամբ զնոյն։ Եւ աւարտեսցես զպէտսն դուզնաքեայ 'ի վերայ բանիւ։

## ՊԷՏՔ ԳՈՐԾԱԿԱՆՔ։

### ԴԻՈԳԻՆԷՍ ՏԵՍԵԱԼ ԶՄԱՆՈՒԿ ՍՏԱՄԲԱԿ, ԶՄԱՆԿԱԾՈՒՆ ԳԱՒԱԶԱՆԱՒՆ ԵՀԱՐ։

Ցիրաւի աքանչացեալ զարմասցի ոք ընդ իմաստասիրացն ամենագեղեցիկ յաւրինեալ պարս, որ զի յաւէրժ նոքա կարացին իբր աւրինակ իմն՝ անբաղայ ազատութեամբ, 'ի բաց զհոգս ընկենլով աշխարհականս, իմաստասիրականին ևեթ պարապեալ տեսութեանց բանի, և այնու դէպ վերոյ ամենայնց լինել մարդկան։ Բայց և 'ի նո՛սա դարձեալ թուի, թէ որք զմեծն զովութեան ունին յաղթանակ, շնականացն անցեալ խոստովանեսցին հոյլք,

*այսպիսաբար զանազանելով վերաբերութեամբ. վասն զի նոցա գոլ բանիւ լռացն՝ բնախաւսութիւն է սիրելութիւն: Իսկ այնց յոյժ բարեբաստ եղելոցն, համապազ զկենցաղաւգտակարագոյնն խրատուք միանգամայն բանիւ՝ 'ի գործոց ցուցանի նահատակութիւն: Տինա պահապանք լինելով իրաւանց և պաշտպանք և բոլոր քաղաքի պատճառք բարեզարդութեան. Նորին աղագաւ և պատուականագոյնք 'ի նոսին անուանեցան գլուխ. այնքան յայլոցն վերագոյն:*

*Ա. Որչափ մեծն 'ի նոսա Դիոգինէս հռչակի, փայլեալ իւրովքն միշտ խրատաբանութեամբք. որոց յոյժ անբաւ երանութեանցն է գովութիւն, և հանդէս բոլորիցն եղեալ բանաւորաց:*

*Բ. Որպէս զի մի 'ի բազմաց նորա իմաստասիրութեանց առաջի ահա եդեալ, պատուականագոյն վարկանիմ զվարդապետութեան նորա աւրինակս. անցցուք զհրաշալի գործոյն տեսանել երևումըն, զոր ամենեցուն 'ի խրատ՝ յայտ է՝ և 'ի զգուշութիւն ծանուցեալ. և են բացայիշեցեալքն այս ինչ: Քանզի նա երբեմն զանվայելուչ՝ սովորական տեսանէ իմաստութեան, կացի անազդակեալ 'ի քաղաքի, և անդէն առանց միոյ վաղվաղակի երկբայութեան թողեալ զնա, և զդաստիարակն ջնեալ պատուհասէր:*

*Գ. Ստոյգ և արդարև ընտրող արդարադատն իրաւանց, զի 'ի մանկածուն կողմն մտեալ կարկառէր զանիրաւ ստահակութեանցն տուգանս: Յա-*

ղագս որոյ զայս 'ի սկզբանէ գիտելով ծնողաց՝ զիւրաքանչիւրն ծննդոց զխակութիւն անզգամութեանն թէ ախորժաբար սիրեն 'ի վատթարն կոյս յեղուլ. վասն որոյ և անդստին իմն գոգցես փութացեալ ճեպին, զեր զամենայն լաւագոյն նոցա համարելով, ոչ միայն զկելոյն հոգալ պատճառս՝ այլ և զբարուոքն առաւել կելոյ։ Եւ այնորիկ նմին իրի աղագաւ մեծաւ ջանան զիմաստնագոյնսն գտանել հնարիւք, այլ և զյոյժ հաւատարիմս 'ի վարդապետաց։ Եւ 'ի ձեռս տուեալ, այնուհետև բազում յուսան խրախամիտս լինելով առ 'ի զբարեբախտագոյնսն 'ի նոցանէն ընդունելով վայելս։ Եւ կարի քաջ խոստովանեալ այս գտցի բան։ Որոց թէ 'ի սկզբանն առաքինագոյն ուսուցիչն հանդիպեսցի, և ոչ սուղ ինչ այնուհետև աշակերտն տարակուսեսցի՝ զնոյնս ճշգրտապէս զիմաստութեանցն բերել պտուղս բազում և ամենազանս։ Որովք և հանգոյն նոքիմբք բարեզարդութեամբք 'ի կենցաղումս բերկրեալք, ցայնքան 'ի վայելուչ վարժողաց զաւգտակարագոյնսն կրթեալ խրատս, մինչ սիրելիք կարի քաջ թագաորացն եղանիլ, վերակացուք քաղաքացն, պարծանք ծնողաց, և բովանդակ շինութեան տան և գաւառի պատճառք։ Այլ և ինքեանք իսկ՝ բոլոր բարեբախտիկ երևեալ զուարճանան փառաւք։

Դ. Իսկ որոց այսպէսն ոչ պատահեսցի մանկավարժն. բայց սոցին հակառակ ասասցելոցս խենէշութեամբ զգածեալ և ամենայն անարի տաղտուկ կապեալ վատութեամբ, նա ոչ միայն թէ զանզգամու-

*թիւն 'ի մանկանցն ոչ կարասցէ հանել ոգւոյ, և կամ բարեաց նոցա լինել պատճառք, այլ միանգամայն, որպէս ճշմարիտն երևի՝ զբազմապատիկսն 'ի վերայ առնէ տալ զաղիտիցն սաստկագոյն թշուառութիւնս, յանգիտութեան ասեմ անուսումնութենէ. յորմէ անպիտանք 'ի բոլորումն գտանին վայելչականս: Այնու զի ոչ 'ի մեծ ատենիցն վարին հանդէս և ոչ յայլ ինչ 'ի մի արժանաւորացն և պանծալեացն. այլ թախիծք դլրացեացն գոլ և մերձաւորացն տխուր տրտմութիւն. և գլխովին ատելիք հարազատն ամուսնաց և գրեթէ հասարակաց ամենայն իսկ մարդկան՝ իշխանաց և իշխեցելոց: Զայս մի ըստ միոջէ թուել՝ անառակն կորուստ խոշտարաց 'ի ծուլիցն լեալ խնամողաց՝ ոչ է հարկաւոր և կամ աներևութաբար 'ի ծածուկ անկեալ իմաստք:*

*Ե. Որպէս զի զայս հաւաստեաւ իմանալ՝ յանվարժիցն ձիոցն է և 'ի դերևացեալն ամայի անդաստանաց: Յորոց մին զմշակին ահա ամբաստանէ ձեռաց. և երկրորդն զվերելակին տխմարութիւն յանհրահանգն յանդիման ելոյ կացուցանէ:*

*Զ. Բայց ես նմանապէս և 'ի հնդեայ չարաչար կրիցն կարի յոյժ հաստատուն է ուսանել. այնու զի բարիոք ոչ զիւրսն խրատելով որդիս առ 'ի յաստուածայինսն ուղիղ գնալ ճանապարհս. ընդ որոց և պատուհասեալ՝ զրաւեցաւ 'ի կենցաղոյս:*

*Է. Տինա և ոչ փոքր ինչ խրատաբանութեամբ և մարգարէի ումեմն*[1]*) զոյն աստուած մատուցեալ*

---

[1]) Եզեկիէլ Գ, 17 և 18:

*վկայէ բանիւ, եթէ դէտ զքեզ կացուցի 'ի վերայ տանն Իսրայէլի. որում թէ ոչ բողոքեսցես, զարիւնն 'ի քոց խնդրեցից ձեռաց։*

*Ը. Արդ այսպէս պարտ և արժան է 'ի վերայ ասացելոցս զարմանալ միայն ընդ մեծ և հռչակաւորն Դիոգինէս և զնոյն գովել և ընդունել և զերիցութեանն նմա տալ իմաստասիրութեանն գովանաց մրցանակ։ Որ այսպէս կենցաղաւգուտն կարաց խրատուք զընդհանուր քաղաքացն տնաւրինել իրս և գեղեցկաբար վարելով դարձեալ զանապակ բարեացն ուսոյց պահել մտերմութիւն և վարդապետաց առ իւրեանց հաւատացեալ մանկունսն։ Որով 'ի ներկայումս զաշխարհագովութեանցն առցեն պսակս և անուն քաջ առ 'ի յապայսն թողցեն անմոռաց յիշատակաւ։*

---

## ԻԱ. ՆՈՑՆ։

### ՏԽՐԵՐԱՆԳՆ ՀԱՒ ՑԱՐՏՈՒՍՏ ՓԵՏՐՈՎՔ։

*Զայն աւետաւոր հրատարակէր առ մետասան երամս աւդապարիցն 'ի վեհագոյն վեհիցն պետաւորէ՝ երագապէս ժամանել 'ի յաւրն երևելի. որ ոք 'ի ձէնջ իցէ գեղաղէշ 'ի վայելուչ դիտաւորութեան՝ 'ի հասարակացն գումարութեան առցէ զթագից աշտիճան։ Այց թևածեալ փութապէս ճախրէին համաչուելով սերք թևահերձացն ըստ իւրաքանչիւր հոմերամ տեսակացն հասեալ 'ի տեղիս լոգարանացն. իջեալ առ հեզասահ վտակաւ*

խաղիցն յորդահոսան յստակագոյն աղբերացն, և ծայրալիր վայրաւք վայելչացեալք, երամ երամ գնդիւքն բանակէին։ Որոց հանդէպ ներանձիցն բոլորակամ քատակապէս 'ի զարդսն պաճուճանացն զանհաւասարսն 'ի փետրոցն յաւրինելով պանծային զգերապատիւն առնուլ ձիրս։ Անդ տխրերանդ հաւն խարդաւանեալ զառ 'ի յայլոցն արտաքաղելով, բաղադրելով յիւրում սևաթոյր սարասին, 'ի մէջ բեւրակերպ հաւուցն պայծառանայր՝ դիտաւորեալ բոլորիցն նորահրաշ, որ ծաղկազարդ երանգաւքն պաճուճանաց և գերապարծ հրճուանաւք զզարդուց բոցափայլիւր 'ի հասարակացն։ Առ որ հնչելով զերանաւէտ զձայն համագունդ ժողով գումարելոցն՝ նուիրէին նմա վիճակին յաւէտ ըստ արժանի արքայական ճոխութեանն։ Իսկ խորամանկ թռչունն գիշերասէր 'ի հռչակելին մերձակաց գոլով, պարատեսող խոհականութեամբ ծանաւթանայր իւրեանն երանգի։ Իսկոյն առեալ 'ի բաց զերծանելով համանման իւրոյինն ներգոյից, բացադրելով աւրէն հոմազին արտայայտէր զըապանծ խրոխտանս պերճացելոյն։ Հետևելով և այլքըն հանգիտարագ իւրեանցասարաս երանգոց գիտակ ելով ըստ մաւտազգաց իրադիտողին՝ զիւրաքանչիւր համանգամայն կապտէին։ Երգ այպանելի և ծաղըական. անզարդ յարտուստն զարդարանաց և մերկագոյն յիւրոցն սարասից՝ ծաղը յերաստս յոքնազան հաւուցն եղանիւր։

---

# ԺԲ. ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ:

---

## ԹՈՒՂԹ ԱՌ ՔՐԻՍՏՈՍԱՍԷՐ ԻՇԽՈՂՆ ՀԱՅՈՑ ԻՆՔՆԱԿԱԼՈՒԹԵԱՄԲ ԼԵՒՈՆ։

Անկարգութիւն իմ այն է, որ ընդ ամենայն քրիստոնեայս հաղորդիմ։ Գիտելի է իմաստուն քննողաց՝ որ քրիստոնէից ազգք բաժանորին 'ի միմեանց ուրք ուրք. իսկ շնորհն աստուծոյ զաւրացոյց զիս՝ զայս մնոտի աւանդութիւնս նոցա՝ գիտութեամբ արհամարհել և զսէրն նախապատուել. և է ինձ հայն որպէս զլատինացին, և լատինացին որպէս զհելլենացին, և հելլենացին որպէս զեգիպտացին, և եգիպտացին որպէս զասորին։ Արդ եթէ ես միոյ ազգի ջատագով էի, ընդ այլսն ո՞րբ էր կար հաղորդիլ. բայց ընդ ուրաքանչիւրսն, որ միմեանց թշնամիք են՝ խառնիմ, և զընաւսն շահիմ ըստ Քրիստոսի առաքելոյն. և ունիմ բան՝ որ ամենայն հարցողի կարող եմ պատասխանել, թէ ուղիղ ընթանամ և սիրովն Քրիստոսի զամենայն կրծիմն քակեմ. որով բարեհռչակիմ և 'ի լատինացւոց եկեղեցիսն, և 'ի հելլենացւոց, և յասորւոց, և կամ 'ի Հայաստանս. և ընդ սոսա անշարժ, և 'ի նոցին աւանդութիւնն անփոփոխ։

---

# ԻԳ. ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ։

---

## ՈՂԲ ԵԴԵՍԵԱՑ։

Լացէ՛ք լացէ՛ք բարձըր ձայնիւ
    առ հասարակ յամենայնի.
Զիս ողբացէ՛ք կողկողալի,
    որ էք ծընունդ աւազանի։
Եդեսիէ, Ուրհայ քաղաք,
    որդեկորոյս, որբ և այրի,
Կանչե՛մ առ ձեզ ձայն կանացի,
    կականալիր ողորմելի.
Ըզքաւղս 'ի գլխոյս մերկանալով,
    զի՛մ պատառեմ ծածկոյթ վարդի.
Փետե՛մ ըզվարսս իմ ցանկալի,
    խըզեմ ըզհե՛րս անխնայելի.
Քարամբ ծեծեմ ըզկուրծ սըրտի,
    բաղխեմ զերե՛սս իմ յապտակի։
Նըստի՛մ 'ի սուգ 'ի տան մըթի,
    որպէս աւրէն. է սգաւորի.
Եւ փոխանակ որդան զգեստի
    սե՛աւ ըզգենում՝ գոյն տըխրելի.
Հեղո՛ւմ արտասուր անչափելի
    յորդ և առատ՝ Նըման գետի։

Քանզի առա՛կ եղէ յերկրի,
տիեզերաց նախատելի.
Եւ անցաւորք ճանապարհի
վա՛յ 'ի վերայ ասեն վայի։
Զի ո՛չ ծածուկ էի տեղի
կամ 'ի յանկեան ինչ թագըստի,
Այլ 'ի գետիցն, որ յԱդենի,
էի բազմեալ ես 'ի միջի՝
'Ի յԵփրատայ և Տիգրիսի,
որ Միջագետք անուանի,
Արքայարան մեծ արքայի
Հայ ւասորւոց՝ Աբգարոսի։
Արդ նախ ասեմ զայն, որ կրեցի
'ի ձեռանէ տեառն ըղքարի,
Ապա զչարիսն, որ պատահեաց
ինձ ըստ մեղաց յանկարծակի։
Դո՛ւք հեզաբար աստ մատուցէ՛ք
զականջըս ձեր իմոյս բանի,
Զոր ծանուցից փոքր 'ի շատէ
ձեզ ըղձանգատս իմ ըստ կարգի։
Ես մա՛յր էի բազմորդութեան,
անթիւ ծընեայ դուստր և որդի,
Զորս մայրաբար դարմանեցի,
ստեանց իմոց կաթն արբուցի,
Գեղեցկատիպ յաւրինեցի,
վայելչապէս զարդարեցի։
Քանզի երկիր պարարտ էի,
աղբեւր կաթին յորդ բըղխէի.

Աւետաբեր Նըման վայրի
ւայլ գերագոյն, որպէս Թուէի։
Բեւր բարութեամբ լըցեալ կայի
'ի զանազան բերմունս երկրի։
Ջուր կենդանի յինէն բըղխէր,
զուարթատեսիլ բոյսս յաւրինէր.
Ըզբուրաստանս արբուցանէր
և ըզմարդիկ ուրախ առնէր։
Ծովս 'ի միջի իմ ծածանէր,
քաղցրիկ աւդովըն ծիծաղէր.
Զաղտեղութիւն տըղմին մաքրէր,
ըզհըրապարակըն զարդարէր։
Բազմագունի տունկ յաւրինէր,
որպէս ըզդըրախտն, որ յեդեմ էր.
Սաղարթաբեր ծառովք ծաղկէր,
առատագոյն պըտղաւետէր։
Տերեւախիտ հեզըի'կ շարժէր,
հոտ անմահից յիւրմէն բուրէր.
Նարդոս, քըրքում ինձ ընծիւղէր.
վարդ, մանուշակ վերաբերէր։
Առաւաւտեան ցաւղն իջանէր,
ոսկենըման ճաճանչ փայլէր.
Անհամեմատ յերկրէ նա' էր
պըտղովքն ամէն, զոր ընծայէր,
Զոր և ասել ոչ ոք կարէր
մի առ միոյ, թէ և կամէր։
Զի զանդաստանս իմ թէ գործէր
ոք երկրածին և սերմանէր,

Հարիւրաւոր, վաթսունաւոր
կամ երեսուն պըտղաբերէր։
Տոհմականաւք, զոր ընծայէր,
բազմաբեղուն բարիս բերէր.
Ցըշտեմարանըս ժողովէր,
այնու զորդիսն իմ կերակրէր.
Ձամենեսեան ուրախ առնէր
'ի բեւր բարիսն, որ ընծայէր։
Բայց թէ ըզդիրս իմ յանգաւոր
ոք պատմեսցէ պատշաճաւոր.
Կարծեմ, թէ չէ՛ նըմանաւոր
այս քաղաքացս, որ երկրաւոր։
Լա՛յն և արձակ նըստեալ յաթոռ,
որպէս 'ի կուռըս թագաւոր
Կամ թագուհի յոյժ գեղաւոր,
ոսկետըրտուն և ճամկաւոր.
Փողփողելով 'ի վերջաւոր,
պայծառազգեստ և պըճնաւոր.
Շուրջանակի պարառաւոր
պարիսպ ածեալ լայն և ամուր։
Աշտարակաւք բարձր ահաւոր,
իմաստապէս ւարուեստաւոր.
Որպէս զըլուխըն դիպաւոր,
մակ հաւասար անձին բոլոր։
Հաստահեղոյս հիմամբ 'ի խոր,
մահարձանաւք պըսակաւոր.
Տո՛ւնք և տաճար զարմանաւոր
շինեալ 'ի գիրկս իմ գեղա՛ւոր,

Ցա՛րկք և փողոց՝ տեղ վաճառոց՝
    գոյր յաւրինեալ հանճարաւոր։
Բայց և զխորանսըն լուսաւոր,
    Թէ ո՛րպիսիք յոյժ փառաւոր,
Ձայն չէ ասել ինձ հնարաւոր
    կամ հողեղէն մարդ երկրաւոր.
Զի երկնայնոցն էր նմանաւոր,
    վերնագունին հանգիտաւոր.
Զարմանազան և աննըման,
    զոր չէ՛ տեսեալ ոք բանաւոր։
Ա՛յդպէս կացի յոյժ խընդաւոր,
    զերդ մայր որդւովք բերկրեալ յորդոր.
Դուստր և որդիք իմ բեւրաւոր
    զինեւ կային շուրջ պարաւոր.
Փըթթեալ վարդից նըման թերթից
    կամ գեղունակ ծըղած խընձոր.
Որպէս զայգի մեծ դաշտաւոր
    կամ բարունակ ողկուզաւոր.
Իբր 'ի յանկեան տունկ սորեկորթ
    տեղւոջ պարարտ և զաւրաւոր։
Եւթանասունք խորհըրդաւոր
    աւանք պատեալ զինև բոլոր։
Եւ ես բազմեալ, զերդ թագաւոր,
    կայի 'ի մէջ հանդիսաւոր։
Արդ այս բարիքս, որ պատմեցան,
    փոքր 'ի շատէ բան ճառեցան.
Որ 'ի յանցեալ դարուն ըսկսան
    և այժմ առին փոյթ ըզվախճան։

Յորում էր ուրախական,
    մասին հասեալ երանական,
'Ի տեսողաց ներբողական
    Եւ լըսողաց զարմանական։
Բայց 'ի հասեալ ներկայական
    ժամանակիս, որ դիպեցան,
Բարիքն ամէն ըսպառեցան.
    Եւ քաղցրութիւնքըն դառնացան.
Եւ երանի տալոյն փոխան
    զիս եղկելի այժմիկ կարդան։
Թըշնամեաց դասքըն մեր խընդան
    Եւ սիրելիք ձայնիւ ողբան.
Գլո՛ւխ 'ի վերայ իմ ամբառնան,
    որք 'ի ներքոյ ոտից եղան։
Ազգ, որ ծառայքն էին բնական,
    ծընունդք՝ որդիքն աղախնական,
'Ի Սառայէ փախըստական
    ձագար ւորդին հալածական.
Զի մի՛ ժառանգ նա հայրական
    Աբրահամու գոլ սեպհական։
Ա՛յժմ յազատիս վերայ յարեան,
    հանել զտիկինըս կամեցան,
Անժառանգել զիս խորհեցան
    Եւ հալածել յորդւոց մարդկան։

---

## ԻԴ. ՎԱՐԴԱՆ ՄԵԾ։

---

### ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑՆ ՍԱՐԳՍԻ ԶԱՒՐԱՎԱՐԻՆ։

*Ամենասուրբ երրորդութեան ընտրեալ ծառայ*
*և հաւատարիմ,*
*յաղթաւղ սպառազէն և քաջ նահատակ.*
*երազահաս սուրբըդ Սարգիս, շնորհաց աւթեվան.*
*բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։*
*Թագաւորին երկնաւորի՝ սուրբ զաւրապետ*
*և մենամարտիկ,*
*սիրով անմահին խաչեալ յաշխարհի.*
*երազահաս սուրբըդ Սարգիս, խաչիւ պըսակեալ.*
*բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց.*
*Արեգական արդարութեան մեծ կարապետ՝*
*պայծառ արուսեակ,*
*ցոլացեալ 'ի մտից 'ի յելս արևու.*
*երազահաս սուրբըդ Սարգիս, անշէջ ճառագայթ.*
*բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։*
*Աւետաւոր Հայոց Մեծաց դիմեալ 'ի մէջ*
*երկրի հիւսիսոյ,*
*հողմըն հարաւոյ 'ի դաշտ ծաղկածին.*
*երազահաս սուրբըդ Սարգիս, տունկ անմահութեան.*
*բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։*

Առաքելոց զինու վառեալ մըտեր 'ի մեծ
հանդէս քաջութեան,
Մարտիրոս որդւովդ 'ի Պարսս վըկայեալ.
երագահաս սուրբըդ Սարգիս և Մարտիրոս՝
մեծ պըսակաւորք.
բարեխաւս լերուք առ տէր վասն անձանց մերոց։
Զգերագոյն պատիւ առեր 'ի բարձրելոյն
բանիւն բարեխաւս,
կատարիչ խընդրոց, լըսաւղ աղաւթից.
երագահաս սուրբըդ Սարգիս, դիւաց հալածիչ.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Դու ցաւալից կենաց մարդկան զաւրեղ բըժիշկ,
սըրբիչ արտասուաց.
Նեղելոց դիւրիչ, վըշտաց մըխիթար.
երագահաս սուրբըդ Սարգիս, գերեաց գերեհան.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Քո գեղեցիկ անուն բարի
քաղցր և անոյշ պըտուղ շըրթանց
հաւատացելոց.
'ի գիշերի և 'ի տուընջեան յուսով կոչեցեալ,
ընդ ամենայն տեղիս յիշեալ և փառաւորեալ.
երագահաս սուրբըդ Սարգիս, գերեաց ազատիչ.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Սաղաւարտ յուսոյ անմահ բանիւն
եդեալ 'ի գլուխ մերոյ իշխանին.
սուսեր աջոյ,
վահան հաւատոյ
քրիստոսասէր զաւրաց

# ԻԴ. ՎԱՐԴԱՆ ՄԵԾ:

---

## ՇԱՐԱԿԱՆ ՍՐԲՈՑՆ ՍԱՐԳՍԻ ԶԱՒՐԱՎԱՐԻՆ։

Ամենասուրբ երրորդութեան ընտրեալ ծառայ
և հաւատարիմ,
յաղթաւղ սպառազէն և քաջ նահատակ.
երազահաս սուրբըդ Սարգիս, շնորհաց աւթեվան.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Թագաւորին երկնաւորի՝ սուրբ զաւրապետ
և մենամարտիկ,
սիրով անմահին խաչեալ յաշխարհի.
երազահաս սուրբըդ Սարգիս, խաչիւ պըսակեալ.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց.
Արեգական արդարութեան մեծ կարապետ՝
պայծառ արուսեակ,
ցոլացեալ 'ի մտից 'ի յելս արևու.
երազահաս սուրբըդ Սարգիս, անշէջ ճառագայթ.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Աւետաւոր Հայոց Մեծաց դիմեալ 'ի մէջ
երկրի հիւսիսոյ,
հողմըն հարաւոյ 'ի դաշտ ծաղկածին.
երազահաս սուրբըդ Սարգիս, տունկ անմահութեան.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։

Առաքելոց զինու վառեալ մըտեր 'ի մեծ
հանդէս քաջութեան,
Մարտիրոս որդւովդ 'ի Պարսս վըկայեալ.
երագահաս սուրբըդ Սարգիս և Մարտիրոս՝
մեծ պըսակաւորք.
բարեխաւս լերուք առ տէր վասն անձանց մերոց։
Զգերագոյն պատիւ առեր 'ի բարձրելոյն
բանիւն բարեխաւս,
կատարիչ խընդրոց, լըսաւղ աղաւթից.
երագահաս սուրբըդ Սարգիս, դիւաց հալածիչ.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Դու ցաւալից կենաց մարդկան զաւրեղ բըժիշկ,
սըրբիչ արտասուաց.
Նեղելոց դիւրիչ, վըշտաց մըխիթար.
երագահաս սուրբըդ Սարգիս, գերեաց գերեհան.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Քո գեղեցիկ անուն բարի
քաղցր և անոյշ պըտուղ շըրթանց
հաւատացելոց.
'ի գիշերի և 'ի տուընջեան յուսով կոչեցեալ,
ընդ ամենայն տեղիս յիշեալ և փառաւորեալ.
երագահաս սուրբըդ Սարգիս, գերեաց ազատիչ.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Սաղաւարտ յուսոյ անմահ բանիւն
եդեալ 'ի գլուխ մերոյ իշխանին.
սուսեր աջոյ,
վահան հաւատոյ
քրիստոսասէր զաւրաց

և զաւրապետաց.
երագահաս սուրբըդ Սարգիս, ամուր պարիսպ
ընտիր հեծելոց.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։
Խաչաչարչար սուրբ դիտապետ
նըշանագործ անուամբ 'ի խաչ
և յեկեղեցի,
առաւել պայծառ 'ի գլուխըս Գագայ,
'ի գագաթան տեղւոջն աւրհնեալ սըրբոյն Մեսրովպայ
երագահաս սուրբըդ Սարգիս, բաղնեաց կործանիչ.
բարեխաւս լեր առ Քրիստոս վասն անձանց մերոց։



# АРМЯНСКО-РУССКІЙ СЛОВАРЬ



# ԲԱՌԱՐԱՆ
## ՀԱՅ-ՌՈՒՍԵՐԷՆ

# Ա.

Աբգարու և

Աբգարոս, ի *соб. им.* Авгарь, *царь Эдесскій.*

աբեղայ, ի *с.* монахъ, инокъ; *древняя форма мн. ч.* աբեղեան.

Աբէլ, ա (ե, ի) *соб. им.* Авель.

Աբրահամ, ու *соб. им.* Авраамъ.

ագահութիւն, եան *с.* жадность, алчность.

1 ագ]ան-իմ, այ *гл.* ночевать; проводить ночь.

2 ագ]ան-իմ, այ *гл.* надѣвать.

*ադ *указ. м.* этотъ, тотъ *о предм., ближайшемъ ко 2-му лицу, сохранилось. лишь въ нѣсколькихъ архаическихъ формахъ: отлож.* այտի, 'ի ձիոյ այտի *Объ еп. Іоан.*

Ադամ, ա *соб. им.* Адамъ.

Ադեն *геогр. н.* Эдемъ.

ազատ, ա (ե, ի) *пр.* свободный; благородный.

ազատիչ, ա (ե, ի) *с.* освободитель.

ազատութիւն, եան *с.* свобода.

ազգ, ա (ե, ի) *с.* родъ; народъ *Матѳ. 21,* 43.

ազգային, ո *пр.* родовой; народный; родственникъ *Ар.*

ազն, ան(ի) *с.* родъ.

աթոռ, ո *с.* сѣдалище; скамья; престолъ.

ալի, եա (ւո), *обыкн. во мн. ч. с.* волна *Арист.* ‖ сѣдина.

ախոյեանաբեկ *пр.* сокрушающій противника.

ախորժաբար *нар.* охотно.

ախորժ-եմ, *гл.* хотѣть; одобрять; находить пріятнымъ, вкуснымъ, քաղցր ա. упиваться.

ախտ, ի *с.* болѣзнь; страсть; порокъ.

ած-եմ, ի *гл.* вести, приводить; պարիսպ ա. обводить стѣною; ծունր ա. см. ծունր.

ակամայի *пр.* невольный; *յակամայ* противъ воли.

ականաւոր ա (ե,ի) *пр.* именитый, извѣстный.

ականջի, *особ. мн. ч.*

ականջ-ք, ա ухо; уши.

ակնկառոյց *пр.* уставившій глаза: *ա. լինիմ* уставлять глаза, уставляться глазами *Объ еп. Іоан.*

ահի *с.* страхъ, ужасъ.

ահա *нар.* вотъ.

ահագին *пр.* страшный, ужасный.

Ահարոն *соб. им.* Ааронъ.

ահարկելի *пр.* страшный.

ահաւադիկ *нар.* вотъ.

ահաւանիկ *нар.* вотъ.

ահաւոր ա (ե,ի) *пр.* страшный, ужасный.

աղաբողոն *с.* верхняя одежда; ряса.

աղագ ա (ե,ի) *с.* образъ; *тв. աղագաւ* ratione по причинѣ; *յաղագս* о, изъ-за.

աղախին ա, *о* и եա *с.* рабыня.

աղախնական ա (ե,ի) *пр.* свойственный рабынѣ; принадлежащій р.

աղաղակ ա (ե,ի) *с.* крикъ, крики.

աղաղակ-եմ *гл.* кричать.

աղամ *гл.* молоть; толочь, истолочь *Поуч. св. от.*

աղաչեմ *гл.* умолять, просить.

աղաւնեվաճառ ա (ե,ի) *с.* продавецъ голубей.

աղբերակն, ան (ու) *с.* источникъ.

աղբեւր, եր *с.* источникъ.

աղեղն, ան *с.* лукъ.

աղեղնակապարճ *слож. сущ.* лукъ и колчанъ.

աղեբողոն *см.* աղաբողոն.

աղեբեկ *пр.* завитой; *ա. ծայրիւ հերաց* съ завитыми концами волосъ.

աղէ՛տի *с.* жалость, соболѣзнованіе; горесть, печаль; уныніе *Ел. Бит. арм. съ перс.*; бѣдствіе; *ու նախանձու աղետի* вслѣдствіе гибельной зависти.

աղի՛-ք, եա *с.* кишки; внутренности.

Աղձնի՛-ք, եա *геогр. н.* Агдзникъ.

աղմուկ ա (ե,ի) *с.* волненіе, смятеніе, безпокойство, сумятица; шумъ; затрудненіе.

**Աղուանք, ից** *этн. н.* Албанцы;--*геогр. н.* Албанія.
**աղտեղութիւն, եան** *с.* нечистота, скверна; позоръ, *գործք ա-թեան* нечистыя дѣла, позорныя д.
**աղքատ ա** (*ե,ի*) *пр.* бѣдный.
**աղքատասիրութիւն, եան** *с.* любовь къ бѣднымъ.
**աղօթք, ից,** *лишь во мн. ч. с.* молитва.
**աճել** *гл.* плодиться *Быт. 1, 22.*
**աճումն, ման** (*ուն*) *с.* увеличеніе; размноженіе; ростъ *Арист.*
**ամ ա** (*ե,ի*) *с.* годъ.
**ամայի, եա** (*ւո*) *пр.* пустынный, одичалый.
**ամաչել** *гл.* стыдиться, постыдиться *'ի съ отл.* *кого л.*
**ամառն,** (*ր*)*ան* (*ուն*) *с.* лѣто.
**ամբաստանամ** *см.* *համբաստանամ.*
**ամբաստանել** *гл.* обвинять; обличать *съ род. кого л.*
**ամբարտաւանութիւն, եան** *с.* гордость.
**ամբոխ ի** *с.* толпа; смятеніе; гулъ.
**ամբոխումն, ման** (*ուն*) *с.* смута, волненіе.

**ամէն** въ сложеніи *см.* 1**ամէն.**
**ամենագեղեցիկ** *см.* *գեղեցիկ.*
**ամենազան** *пр.* всякаго рода, всяческій.
**ամենայն** *опр. м.* весь; всякій; *въ отриц. предл.* никакой, *ըստ ամ նմանութեան* ни по какому подобію *Исх. 20, 4*; *յամենայնի* всячески.
**ամենասուրբ ո** *пр.* пресвятой.
**ամենեւին** *нар.* совсѣмъ; вовсе.
1 **ամէն ի** *опред. м.* всякій, весь.
2 **ամէն** *нар.* аминь, истинно *Матѳ. 21, 31.*
**ամիս ո и եան** *с.* мѣсяцъ.
1 **ամուր** *пр.* крѣпкій, укрѣпленный; недоступный.
2 **ամուր ո** *с.* крѣпость, укрѣпленіе.
**ամպ ո** *с.* облако.
**ամպային** *пр.* подобный облаку, какъ облако; *ատեսողացն ցուցանի* зрителямъ представляется, какъ облако.
**ամրանամ** *гл.* укрѣпляться.
**ամրացուցանել, ի** *гл.* укрѣплять; обезопасить; обезпечивать.

**ամրութի՛ւն, եան** *с.* укрѣпленность; крѣпость, укрѣпленіе.

**ա՛յ** *межд.* гей! о!

**այգ** *ո и ու с.* заря; *այգուց* на зарѣ, по утру.

**այգի՛, եա** (*ւո*) *с.* виноградникъ; садъ.

**այգորդ** *ա* (*ե,ի*) *с.* виноградарь, садовникъ.

**այդ** *указ. м.* этотъ, тотъ, *о предметѣ близъ второго лица;* — *այդպէս* такимъ образомъ, *какимъ что л. дѣлается или состоитъ близъ второго лица;* — *այդպիսի* таковой *съ тѣмъ же отношеніемъ ко второму лицу.*

**այժմ** *и*

**այժմիկ** *см.* ժամ.

**այլ** *неопр. мѣст.* иной, другой; — *нар.* և այլ еще, и еще; — *со.* но, а.

**այլաւանդ** *ա* (*ե,ի*) *пр. с.* иновѣрецъ.

**այն** *указ. м.* тотъ; *վասն այնորիկ* поэтому *Исх. 20, 11.*

**այնուհետև** *см.* հետ.

**այնչափ** *см.* չափ.

**այնպէս** *см.* պէս.

**այո** *нар.* да!

**այպանեմ** *гл.* насмѣхаться; осмѣивать.

**այպանելի** *пр.* достойный смѣха; уморительный.

**այս** *указ. м.* этотъ; слѣдующій, *ա. ինչ* слѣдующее; *ա. ինքն* т. е., именно.

**այս** *ո с.* дуновеніе; духъ, бѣсъ.

**այսինքն** *см.* այս.

**այսպիսաբար** *нар.* такимъ образомъ.

**այսքան** *см.* քան.

**այսուր** *см.* ուր.

**այդր** *см.* այդ.

**ա՛յր, առն, արամբ** *с.* мужчина; мужъ; супругъ.

**այրի** *с.* пещера; вертепъ.

**Այրարատ** *геогр. н.* Айраратъ.

**այրի՛, եա** (*ւո*) *с.* вдова.

1 ***ան** *указ. м.* этотъ, тотъ *о 3-ьемъ лицѣ или предметѣ, ближайшемъ къ 3-ему лицу, сохранилось лишь въ немногихъ архаическихъ формахъ: отл. անտի, 'ի ձրոյ անտի; самостоятельно:* оттуда.

² ան- *преф. отриц.* не, безъ *въ именахъ и глаголахъ.*

անաղդրաճ-եմ *гл.* не признавать; ослушаться; безчинствовать.

Անան *соб. им.* Ананъ.

անանու́-խ ո *с.* мята.

անանց *пр.* непреходящій.

անապակ *пр.* *несмѣшанный съ водою:* чистый.

անառակ ա (ի,ի) *пр.* распутный; беззаконный, безпорядочный.

անասու́ն ո *пр.* безсловесный:— *с.* животное.

անարգ-եմ *гл.* презирать, отвергать.

անարժան ա (ի,ի) *пр.* недостойный.

անարի, եա (ւո) недоблестный; вялый, жалкій; робкій; присущій трусу.

անճաղւայ *пр.* невинный, безукоризненный.

անճա-ռ ի *пр.* несказуемый, невыразимый; неизмѣримый, необъятный *Л. П. Письмо.*

անգամ *с. время:* разъ, միանգամ однажды, միւսանգամ другой разъ, вторично; որ միանգամ кто только; даже մինչ զի մոյգս անգամ են *Объ еп. Іоан.*

անգիտու-թի́-ն, եան *с.* незнаніе, невѣжество.

անգործ-ած ո *с.* вышивка, выкладка (*золотомъ, серебромъ и драгоцѣнными камнями*).

¹ անդ ո *с.* поле, нива; село *Исх. 20, 15.*

² անդ *нар.* тамъ; туда; тогда; тотъ (*въ связи съ словами обстоятельства мѣста или времени*).

անդադար *пр.* безпрестанный; ա. լինիմ не прекращаться.

անդամ ո *с.* часть тѣла, членъ.

անդաստան ա (ի,ի) *с.* поле, нива.

անդեայ ո *и* ի *с.* рабочій скотъ; скотъ.

անդէն *нар.* тамъ же, անդէն 'ի տեղւոջն на томъ же самомъ мѣстѣ *Ел. Бит. арм. съ перс.;* тотчасъ *Объ еп. Іоан.;* ա. և անդ 'ի սկզբանն въ самомъ началѣ.

անդո́-ւնդ-ք, ո *с.* бездна.

անդուստին *нар.* оттуда, *ա.* *'ի սկզբանէ* съ самаго начала *Ел. О люб. къ Б.*

անդր *нар.* туда, *'ի նա ա.* къ нему самому *Объ еп. Іоан.*

Անդրէաս *соб. им.* Андрей.

անդրէն *нар.* оттуда *Матѳ. 21, 18*; сейчасъ *Объ еп. Іоан.*

աներևոյթ ի *пр.* безвидный *Быт. 1, 2*

աներևու-թաբար *нар.* невидимо, таинственно.

աներկի՜-ւղ ի *пр.* безстрашный, смѣлый; — *нар.* безъ страха, безбоязн.; смѣло.

անզարդ ի *пр.* неукрашенный; *ա. յարտաքուստ զարդարանաց* лишенный чужихъ нарядовъ.

անզգամ-ել *гл.* обезумѣть, дерзать *Л. П. Письмо*; злиться.

անզգամու-թի՜-ն, *եան* *с.* безуміе, неразуміе; злость.

անէծ, ի *об. во мн. ч. с.* проклятіе.

անընչու-թի՜-ն, *եան* *с.* нестяжательность.

անթի- *пр.* безчисленный.

անթու-ել ի *пр.* неизчислимый.

անժամանակերու-թի՜-ն, *եան* *с.* несвоевременная ѣда.

անժառանգ-ել *гл.* лишать наслѣдства, л. потомства; изводить.

Անի՛ ւո *геогр. н.* Ани, *столица Арменіи въ эпоху Багратидовъ: городъ этотъ былъ укрѣпленъ Ашотомъ Мсакеромъ въ 783 г. по Р. Х., а съ 961 г. онъ былъ обращенъ въ столицу; нынѣ развалины на правомъ берегу Арпа-чая (Ахуряна), верстахъ въ 30-ти на югъ отъ Александраполя.*

անէ՜ծ]ան-ել, ի *гл.* проклинать.

անիրա-ւ (*ե,ի*) *и* ի *пр.* неправый, несправедливый.

անիրաւու-թի՜-ն, *եան* *с.* несправедливость, противозаконіе, неправда.

անխայ-ել *гл.* щадить *'ի съ вин. что л.*; *у Ф. О Муш. въ смыслѣ* не щадить.

անխառնու-թի՜-ն, *եան* *с.* несмѣшанность, чистота; не-

воздержанность *Мат*ө. *23, 25*.

անխնայելի *нар.* безпощадно, безжалостно.

անկազմ *пр.* неприготовленный; невооруженный, безащитный.

անկանիմ, այ *гл.* падать; свергаться; ввергаться; впадать, погружаться 'ի մեղս въ грѣхи; անկեալ 'ի ծածուկ իմաստ хранимая въ тайнѣ мысль.

անկարգութիւն, եան *с.* безпорядочность; нарушеніе закона.

անկիւն, եան *с.* уголъ.

անհամեմատ ի *пр.* несравненный.

անհանգիստ *нар.* непрерывно, безпрестанно.

անհաւասար ա (ե,ի) и ի *пр.* неравный; несравненный *Вор. въ ч. пер.*

անհրահանգ *пр.* необученный, невоспитанный; неопытный.

անձն, ան (ի) *с.* душа; особа, лице, личность *Л. П. Письмо;* զանձն себя *Мат*ө. *23, 12;* զանձն իւր себя *Ф. О Муш.*

անձնեայ *пр.* стройный.

անմահ ի *пр.* безсмертный.

անմահութիւն, եան *с.* безсмертіе.

անմարդ ի *пр.* безлюдный.

անմարմին ո *пр.* безплотный.

անմեղ ա (ե,ի) и ի *пр.* безгрѣшный, невинный.

անմիաբանութիւն, եան *с.* несогласіе.

անմիտ ա (ե,ի) и ի *пр.* безумный; глупый.

անմոռաց *пр.* незабвенный.

անմտութիւն եան *с.* глупость.

անյոյս ա (ե,ի) и ի *пр.* безнадежный; ա. լինել отчаяваться.

աննման ի *пр.* безподобный.

անշարժ ի *пр.* непоколебимый; твердый.

անշէջ ա (ե,ի) *пр.* неугасимый, вѣчный.

անշուք *пр.* безъ блеска; обезчещенный; жалкій.

անողորմ ի *пр.* безжалостный, զմիտս իմ անողորմ ունիմ առ *съ вин.* не питаю въ душѣ жалости къ *кому л.*

անողորմաբար *нар.* безжалостно.

**անոյշ, ի** *пр.* сладкій; пріятный; вкусный.

**անուանեմ** *гл.* называть; — *стр.* называться; — *пр. прич.* такъ называемый.

**անուանի, եա (ւո)** *пр.* именитый, извѣстный.

**անուն, ան.** *с.* имя, *յանուն տեառն* во имя Господа, *Զրուան ոմն անուն* нѣкто по имени Зрованъ; слава.

**անուշահոտ, ի** *пр.* благовонный, благоухающій.

**անուսումնութիւն, եան** *с.* неученіе; невѣжество.

**անչափելի, եա (ւո)** *пр.* неизмѣримый.

**անպատրաստ, ի** *пр.* неготовый, неприготовленный; неподготовленный, пустой *Быт. 1,* 2.

**անպարտ, ի** *пр.* неповинный; невинный.

**անպիտան, ի** *пр.* негодный, гадкій.

**անսուրբ, ո** *пр.* нечистый, грязный.

**անստացողութիւն, եան** *с.* нестяжательность.

**անջրպետեմ** *гл.* отдѣлять *Быт. 1,* 7

**անվայելուչ** *пр.* неподобающій, безобразный.

**անվարժ, ի** *пр.* необученный; плохообъѣзженный (*о лошади*).

**անտեղեակ, ա (եւ, ի)** *пр.* несвѣдущій, незнающій.

**անտի** *см.* 1ան.

**անց, ի** *обыкн. во мн. ч. с.* проходъ, переходъ; происшествіе, случай; приключеніе, страданіе.

**անցանեմ, ի** *гл.* проходить; случаться; переправляться; преходить, уходить; превосходить.

**անցաւոր, ա (եւ, ի)** *пр.* проходящій; преходящій; прохожій, странникъ.

**անցուցանեմ, ի** *гл.* вести; переводить; проводить; дозволять пройти.

**անփոփոխ, ի** *пр.* неизмѣнный.

**անօրէն, ա (եւ, ի)** *пр.* беззаконный; нечестивый.

**անօրէնութիւն, եան** *с.* беззаконіе.

**աշակերտ, ա (եւ, ի)** *с.* ученикъ.

**աշակերտեմ** *гл.* дѣлать ученикомъ, — цею; обращать въ свое ученіе.

աշխատ լինիմ гл. трудиться; безпокоиться.

աշխատութ-իւն, եան с. трудъ, работа.

աշխարհ ա (ե,ի) с. страна; *փոքր ա.* или *ա.* провинція *Геогр.*; міръ.

աշխարհագով-ութիւն, եան с. мірская хвала, общественная слава.

աշխարհական ա (ե,ի) пр. свѣтскій, мірской.

աշխարհացոյց ի с. географія.

աշխարու-մն, ան с. оплакиваніе.

աշտարակ ա (ե,ի) с. башня.

աստիճան ա (ե,ի) с. ступень; степень; санъ, *Թագից ա.* санъ вѣнценосца.

աչք, ա и ի с. очи, глаза.

ապ' *передъ гласнымъ, а передъ согласнымъ:*

ապա *нар.* затѣмъ, потомъ; и такъ;—*со.* тогда, то.

ապայի *пр.* будущій; *առ 'ի յապայն* на будущее (время).

ապաշխար-ել, *гл.* каяться, покаяться.

ապաշխարութ-իւն, եան с. покаяніе.

ապարան-ք, ա и ի с. дворецъ.

ապաւէն ա (ե,ի) с. убѣжище.

ապաւին-ել *гл.* прибѣгать; находить убѣжище.

ապշեցու-ցանել, ի *гл.* лишать чувствъ, ошеломлять, озадачивать.

ապստամբ-ութիւն, եան с. возстаніе.

ապտակ ա (ե,ի) с. пощечина, оплеуха.

ապր-ել и

ապր-իլ *гл.* спасаться, оставаться въ живыхъ.

աջ *пр.* правый.

աջակց-ել *гл.* оказывать содѣйствіе.

1 առ *предл. съ вин.* къ; при, *առ որ* при чемъ *Вор. въ чуж. пер.*; *съ род.* вслѣдствіе, изъ-за; *съ твор.* близь, около, у, на *Геогр.*; мимо *Объ еп. Іоан. II*; *ա. իւրովք ժամանակաւք* въ его время *М. Хор. О Тигр.*; *съ отл.:* ради, вслѣдствіе; для.

2 առ см. առնում.

առակ ա (ե,ի) с. подобіе, притча; сказка.

առանձինն *нар.* отдѣльно, особо.

առանց *предл. съ род.* безъ.

առաջ *нар.* передъ, прежде; յառաջ впередъ *Вид. ст.*, раньше.

առաջի *предл. съ род.*: передъ *кѣмъ*, у *кого; ա. съ род.=дат. на русскомъ Матѳ. 23,* 13.

1 առաջին=առաջին *съ суфф.* ն *Матѳ. 21,* 9.

2 առաջի՛ն ո *пор. ч.* первый; прежній;—*нар.* առաջինն прежде, раньше.

առաջնորդ ա (ե,ի) *с.* вождь.

առատ ա (ե,ի) *пр.* щедрый; обильный;—*нар.* щедро; обильно;— *ср. ст.* առատագոյն щедрѣе; весьма обильно.

առատութի՛ւն, եան *с.* обиліе, ա-թեամբ սերմամբ обильнымъ посѣвомъ.

առաւել *нар.* болѣе.

առաւօտեան *нар.* утромъ.

առաւօտի՛ն ո *пр.* утренній; յառաւօտինս по утрамъ.

առաքելական ա (ե,ի) *пр.* апостольскій.

առաքել *гл.* посылать;—*пр. прич.* առաքեալ посланный; апостолъ.

առաքինագոյն ի *ср. ст.* добродѣтельнѣйшій.

առաքինութի՛ւն, եան *с.* добродѣтель.

առնել, (արար) ի, արասցես *гл.* дѣлать, созидать, творить, ա. ողորմութիւն творить милость *Исх. 20,* 6, ա. աղօթս творить молитву, молиться *Объ еп. Іоан. II*; совершать, исполнять զկամս волю *Матѳ. 21,* 31; поступать, արարին նոցա поступили съ ними *Матѳ. 21,* 36; ճանապարհ ա. пролагать дорогу; ա. պտուղ приносить плодъ *Быт. 1,* 11, *Матѳ. 21,* 43.

առնուլ, ի *гл.* брать, взять, յանձն ա. брать на себя, соглашаться на *что л.*; взяться за *что л.*; схватить *Матѳ. 21,* 39; принимать; 'ի վերայ ա. поднимать вверхъ, ձի 'ի վերայ ա. выгонять лошадь наверхъ, т. е. на берегъ *Ел. Бит. арм. съ перс.*;

ա. զանուն произносить имя; ա. զվախճան оканчиваться.

առոյգազդր пр. съ мощными бедрами, бедристый.

*աս указ. м. этотъ, *сохранилось лишь въ нѣсколькихъ архаическихъ формахъ: отл.* աստի, յորդւոյ աստի իմն *Матө. 21, 37; самостоятельно:* отсюда.

ասացած ի с. реченіе; сказанное слово.

աս-եմ, ացի гл. говорить, յասել говоря; называть; разсказывать, описывать; пересказывать, փոխելով ա. пересказывать своими словами; сочинять; — *н. прич.* ասող сочинитель, авторъ.

Ասորեստան եա (ե,ի) *геогр. н.* Ассирія.

ասորի, եա (ւո) *этн. н.* сиріецъ.

ասպարէզ ա (ե,ի) *и* ի с. ристалище; стадія, *продольная мѣра въ 125 шаговъ.*

աստանօր *нар.* здѣсь, тутъ.

աստի *см.* աս.

աստիճան *см.* աշտիճան.

աստղ, եղ с. звѣзда.

աստուա՛ծ ո с. Богъ.

աստուածային ո *пр.* божественный.

աստուածատեա՛ց ա (ե,ի) *и* ի *пр.* богоненавистный; ненавидящій Бога; нечестивый.

ատ-եամ *гл.* ненавидѣть.

ատեա՛ն ի с. собраніе; судилище; засѣданіе.

ատելի, եա (ւո) ненавистный; ненавидящій *Исх. 20,* 5.

Ատրպատական ա (ե,ի) *геогр. н.* Адербейджанъ.

արագ *пр.* быстрый; արագ արագ поскорѣе, почаще.

արար *см.* առնեմ.

արարած ո с. созданіе; *мн. ч.* твореніе, бытіе.

արարի՛չ ա (ե,ի) с. творецъ,

արա-"=արօ" *см. въ концѣ словъ, начинающихся съ* ար.

արբեցեալ ո *пр. прич.* опьяненный, *см.* ըմպեմ.

արբուցան-եմ, ի *гл.* напоять; вспоить.

արգանդ ո *и* ի с. утроба.

արգել-ում *гл.* мѣшать; пре-

пятствовать; задерживать;—*стр.* *արգել[լ]անիմ, այ* быть задержаннымъ *Вид. ст.*; замыкаться *Поуч. св. от.*

**արդ** *нар.* и такъ.

**արդար ո** *пр.* праведный; правдивый; истинный, должный; — *с.* праведникъ.

**արդարադատ ի** *пр.* правосудный, безпристрастный.

**արդարեւ** *нар.* дѣйствительно, поистинѣ.

**արդարութիւն, եան** *с.* праведность; справедливость.

**արդեօք** *нар.* въ самомъ дѣлѣ; *пишется также:*

**արդեաւք** *нар.* развѣ?

**արեգակն, ան** *с.* солнце.

**արեւ ու** *с.* солнце.

**արեւմուտք ի,** *лишь во мн. ч. с.* западъ.

**արթուն ո** *пр.* бдительный; бодрый.

**արժան ի** *пр.* достойный; должный, законный *Матѳ. 23, 16;—сущ.* достоинство, *ըստ արժանի* по достоинству, какъ подобаетъ.

**արժանաւոր ա (ե,ի)** *пр.* достойный, почтенный.

**արժանի, եա (ւո)** *пр.* достойный; *ա. առնել* удостаивать.

**Արիք, եաց** *этн. н.* арійцы, иранцы; *արիք см. ниже.*

**Արիստակէս ի** *соб. им.* Аристакэсъ: *Ар. Ластивертскій, родомъ изъ мѣстечка Ластиверта, около Арцина, армянскій историкъ XI-го вѣка по Р. Хр.; сочиненіе его* *Վասն անցիցն անցելոց 'ի յայլասեռն ազգաց, որք շուրջ զմեւք են,* О несчастіяхъ, постигшихъ (Арменію) отъ окружающихъ насъ (армянъ) иноплеменныхъ народовъ *обнимаетъ время отъ 989 г. по 1071 г. Изъ него заимствованы двѣ статьи Хрестоматіи, XVIII-ая и XIX-ая, обѣ по Венеціанскому изданію 1844 г., первая изъ XXIV главы (109—111 стр.), вторая изъ XVIII главы (81 стр.).*

արիւն, եան с. кровь; пролитіе крови *Матѳ. 23, 30.*

արիք *см.* յառնեմ.

արծաթ ո с. серебро.

արկանեմ, ի *гл.* бросать; 'ի գործ ա. пускать въ дѣло. употреблять; ա. ջուր лить воду; զ *съ твор.* облить *что л.*; ա. հանդերձ надѣть одежду; զ *съ твор.* облечь *что*, օձիկ ա. զուսովք իւր накинуть овчину на плечи; ա. 'ի մէջ вселять въ *комъ.*

արհամարհեմ, *гл.* презирать, пренебрегать;--*стр.* быть пренебрегаемымъ;—*пр. прич.* արհամարհեալ презрѣнный.

Արհմն ի (ե) *соб. им.* Ариманъ.

արձակ ա (ե,ի) *пр.* свободный; открытый.

արձակեմ, *гл.* отпускать; посылать;—*пр. прич.* արձակեալ пущенный, безъ задержки.

արմատ ո с. корень; *мн. ч.* коренья, травы *М. Хор. Письмо Авг.*

Արշամ ա *соб. им.* Аршамъ, *отецъ царя Авгаря.*

արու ա (ե,ի) *пр. с.* самецъ; мужчина *Быт. 1, 27.*

արուեստ ի с. искусство; ремесло; занятіе, дѣло *Арист.*; чудо.

արուեստաւոր ա *пр.* искусный; —*нар.* искусно.

արութիւն, եան с. мужество, доблесть.

արուսեակ ա (ե,ի) с. утренняя заря.

արտահալածեմ *гл.* изгонять; обращать въ бѣгство.

արտայայտեմ *гл.* обнаруживать, открывать.

Արտաշիր *соб. им.* Арташиръ.

արտասուք, ա с. слезы, *ед. см.* արտասուր.

արտասուագոչ *пр.* со слезами и воплемъ, ա. ողբովք плача съ воплемъ и со слезами, плача навзрыдъ.

արտասուախառն *пр.* смѣшанный со слезами; слезный, со слезами.

արտաքաղեմ *гл.* извлекать, выщипывать.

արտաքին, ո *пр.* наруж-

ный, внѣшній;—*с.* внѣшность.

**արտաքոյ** *нар.* внѣ **ա. արքայութեանն այ** внѣ царства Божьяго; вонъ; **ա. քան զայգին** вонъ изъ сада *Матѳ. 21, 39;* снаружи *Матѳ. 23, 27.*

**արտաքս** *нар.* внѣ **'ի քաղաքէն** внѣ города *Вид. ст.;* вонъ; **եկ արտաքս** выйди ко мнѣ! *Вид. ст.*

**արտաքուստ** *нар.* извнѣ;—*пр.* внѣшній, чужой.

**արտօսր** *с.* слеза; *мн. см.* **արտասուք.**

**Արցախ** *геогр. н.* Арцахъ.

**արքայ ի** *с.* царь.

**արքայական ա (ե,ի)** *пр.* царскій, царственный.

**արքայարան ի** *с.* мѣстопребываніе царя, резиденція ц.; столица.

**արքայութիւն, եան** *с.* царство.

**արօտական ա (ե,ի)** *с.* пасущійся; *мн. ч.* кочевники *Арист.;* пастбища.

**աւագ ա (ե,ի)** *пр.* старшій.

**աւազակ ա (ե,ի)** *с.* разбойникъ.

**աւազակութիւն, եան** *с.* разбой.

**աւազան ա (ե,ի)** *с.* водоемъ; чанъ; купель.

**աւաղ** *межд.* о горе! увы!

**աւան ա (ե,ի)** *с.* село; мѣстечко.

**աւանդութիւն, եան** *с.* преданіе.

**աւար ա (ե,ի)** *с.* добыча.

**աւարտ-եմ** *гл.* кончать, заключать.

**աւետաբեր ա (ե,ի)** *и* **ի** *пр.* приносящій радость; веселящій; обѣтованная (земля) *Нерс. Благ.*

**աւետարան ա (ե,ի)** *с.* евангеліе.

**աւետարանական ա (ե,ի)** *пр.* евангельскій.

**աւետարանիչ ա (ե,ի)** *с.* евангелистъ.

**աւետաւոր ա (ե,ի)** *пр.* благовѣстительный; радостный; вѣстникъ радости *Троп. Сарг.*

**աւերակ ա (ե,ի)** *пр.* покинутый, пустынный, пустой; —*с.* развалины.

**աւ=օ** *см. въ концѣ словаря.*

